# ՓԻԼԻՊՈՍ ՓԻԼԻՊՈՍՅԱՆԻ ՋՂՋՈՒՄԸ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂՈՒԿԱՍՅԱՆ

Ովքեր կյանքում գոնե մի անգամ դողացել են իրենց արած վատ բանի համար՝ նրանք կհասկանան, թե այժմ ինչ վիճակի մեջ եմ ես:

Բայց դեռ մի քանի օր առաջ՝ նոր տարվա արձակուրդի նախօրյակին, ես մեր դասարանի ամենաուրախ տղաներից մեկն էի, այնքան, որ երբ որոշեցին դահուկներ ձեռք բերել Ծաղկաձոր գնալու համար ու ես ասացի, որ չեմ գալու, աջից ու ձախից վրաս տվեցին, թե՝ եթե չգաս, գնալն էլ համ չունի:

Ես, իհարկե, համեստորեն հիմա, այնքան էլ մեծ կարծիք չունեմ իմ մասին: Եթե մեր տանեցիներին թողնենք՝ նրանք ինձ աշխարհի ամենաշատախոս տղան են համարում, բայց տեսեք, որ իմ այդ շատախոսությունը տղաներին շատ է դուր գալիս և, գլուխս չգովեմ, մեր դասարանում ոչ որ իմ չափ հետաքրքիր բաներ չգիտի: Ես որ բան եմ պատմում, ծիծաղից հո մեռնում են: Քույրիկս ասում է. «Հիմար, նրանք ոչ թե պատմածներիդ վրա են ծիծաղում, այլ այդ մեծ գլխիդ»: Ճիշտն ասած, գլուխս սովորականից մեծ է, և դրա համար էլ միշտ խուզել եմ տալիս:

Ինչի՞ց, ես չէի ուզում Ծաղկաձոր գնալ: Մտածում էի՝ արձակուրդին կմնամ քաղաքում ու կբռնեմ այդ Մանգասարյան Հարությունին, որ երեք ամիս է, ինչ մի օրով տարել է կոլումբիական մի թանկարժեք նամականիշս ու չի բերում:

Ա՜խ, այդ նամականիշները... Հենց ամեն ինչ էլ դրանցից սկսվեց:

Այո, ամեն ինչ սկսվեց նամականիշներից. ես ֆիլատելիստ եմ, այսինքն ոչ մի մեծամտություն չկա, յոթերորդ դասարանից եմ, թվաբանությունից՝ թույլ, բայց մյուս առարկաներից՝ հատկապես պատմությունից և աշխարհագրությունից՝ ամենաառաջինը, որովհետև ես ֆիլատելիստ եմ՝ նամականիշեր հավաքորդ:

«Ռուանդա—Ուրունդի՞»...

«Յո-խո-խո՜ և մի շիշ ռոմ»...

Հիմա կասեք՝ ցնդե՞լ. Ի՞նչ է, այդ ի՞նչ անհասկանալի բացականչություններ են: Չեմ ցնդել. երբ պատմեմ՝ ամեն ինչ կհասկանաք... Այո, կարող է պատահել, որ ես շատախոս լինեմ, կարող է պատահել, որ մի բան պատմելիս խառը սար ու ձոր գցեմ, բայց դատարկաբանություններ դուրս չեմ տալիս, և քույրիկս իրավունք չունի ինձ գդմագլուխ անել, թող գնա և իր մասին մտածի. երկու բառ չի կարող իրար կապել: Բա գդմագլուխը կարո՞ղ է ֆիլատելիստ դառնալ...

Մարդ չկա, որ ինձ չճանաչի: Ես ֆիլատելիստ Ֆիլոն եմ. շատերին թվում է, թե դա իմ մականունն է և ֆիլատելիստ լինելու համար են վրաս

## ԱՇՆԱՆ ՔԱՄԻՆ

ՍԵՐՈ ԱՆՏՈՆՅԱՆ

Ո՞ւր է սուրում աշնան քամին,
Ի՞նչ է սուլում այս ուշ ժամին,
Ո՞ւր է տանում առած թևին՝
Տերևները ոսկեդեղին:

Մեկ մտնում է տանիք ու բակ,
Մեկ՝ քրքջում պատերի տակ,
Մեկ կանչում է, հետո խաղում,
Մեկ՝ աչքերիս փոշի մաղում:

Ո՞վ պիտի, ո՞վ՝ խենթին կապի,
Քանդեց խոտի դեզն իմ պապի:
Վա՜յ, հարբել է այս ուշ ժամին,
Աշնան քամին, աշնան քամին:

ՀՈԿՏԵՄԲԵՐ
№ 10 1965 Թ.

# ՊԻՈՆԵՐ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
43-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

կպցրել: Ո՛չ, պարզապես մի երջանիկ զուգադիպություն է, որովհետև իսկական անունս Փիլիպոս է, Փիլիպոս Փիլիպոսյան: Ես ու քույրս երկվորյակներ ենք: Եթե նա ինձանից առաջ ծնված լիներ և տղա ծնված լիներ՝ պապիս անունը նրա վրա դրած կլինեին. բայց տես, որ ես ընդամենը ութ րոպե առաջ եմ ծնվել և դարձել... Փիլիպոս: Իհարկե չեմ արհամարհում այդ անունը, մեկ, որ դա պապիս և պապիս պապի անունն է եղել, հետո՝ Փիլիպոս էր և Ալեքսանդր Մակեդոնացու հայրը: Բայց... ախր ի՞նչ Փիլիպոսի դար է հիմա, երբ հրթիռներ կան ու շուտով լուսին են թռչելու, և ապա՝ ի՞նչ մի հետաքրքիր բան է, երբ քեզ ջղայնացնելու համար հետևիցդ կանչեն՝ Փիլիպոսը ընկավ փոսը...

Մի խոսքով, ինչպես ասացի, ոչ ոք Երևանում իմ չափ ընկերներ չունի, որովհետև ֆիլատելիստը ֆիլատելիստին է փնտրում, ինչպես առածն ասում է. «Նմանն զնմանն գտանի»: Ու հավաքածուն հարստացնելու համար հանդիպում ենք իրար, նամականիշեր փոխանակում... Հա՜, ընկերներիս մասին. նրանցից ամենափոքրը 8 տարեկան Վանիկ Հակոբյանն է, որ մի երկու շաբաթ առաջ կարմրուկ էր հանել, իսկ ամենամեծը՝ 83 տարեկան, սպիտակ, սուր մորուքով նախկին ուսուցիչ Միրզաջանյան Հովսեփը, իմ ճանաչածների մեջ ամենախորամանկը: Մեկն էլ կա, որի հետ կապերս խզել եմ, անունը չեմ տալիս (թող ավելի ամաչի) մոտ 50 տարեկան մարդ է. սա էլ լավ դրոշմանիշերը պարզապես թռցնում է: Ֆիլատելիստը պիտի մաքուր ձեռք ունենա. հավաքածուդ ես ուզում հարստացնել՝ պիտի տքնես, փնտրես, թե՛ փոխանակելիս և թե՛ գնելիս լեզու գտնես: Ա՜յ, պատահել է, որ մի նամականիշի համար ես յոթ-ութ անգամ գնացել եմ մի որևէ ֆիլատելիստի մոտ, տանը չեմ գտել, էլի եմ գնացել, անձրևի ու ձյան տակ ժամերով սպասել նախամուտքի մոտ: Մի ինչ-որ նամականիշ գնելու համար կոպեկ-կոպեկի վրա եմ դրել, հաճախ օրերով զրկել եմ ինձ դպրոցի բուֆետում սնվելուց, բայց անազնվություն չեմ արել:

Բայց... արեցի՜...



«Յո-խո-խո՜»...

Խնդրում եմ ուշադրություն չդարձնել այդ «Յո-խո-խո»-ներիս. գիտեմ, որ իմանաք, թե ինչու եմ այդպես բացականչում, չեք ծիծաղի վրաս. պարզապես ինձանից անկախ է ստացվում. դա երևի հառաչելու պես մի բան է դարձել ինձ մոտ...

Իսկ «Ռուանդա-Ուրունդին», «Ֆերնանդո-Պո՜ն»...

«Ֆերնանդո-Պո՜... 1899»... քեզ պես թանկագին նամականիշերի հետ ինչպե՞ս ոչնչացար, վաթսունվեց տարվա հնություն ունեցող իմ սիրելի նամականիշ...

Ճիշտ է, քեզ իմ հավաքածուից զրկեց Գագիկը, բայց զրկեց ոչ թե չար դիտավորությամբ... Եթե արդարությամբ մտածենք, ես էի ձեր կորստյան պատճառը. ինչո՞ւ պիտի թվաբանության դասին զբաղվեի ձեզնով, որ այդպես լիներ...

Իսկ այն, ինչ պատահեց թվաբանության դասին,




այնքան ծանր բան է ինձ համար, որ սիրտս բըր-բըրվում է հիշելիս: Դե, ես թվաբանությունից այնքան էլ գլուխ չունեմ և ձմեռային արձակուր-դից մի երկու օր առաջ նորից տարվել էի գրքի մեջ դրված իմ ամենասիրելի նամականիշերով ու երբեմն անմեղ հայացքով նայում էի ընկեր Բաղ-դասարյանին, որը գրատախտակի վրա ինչ-որ խնդիր էր բացատրում:

Ու հենց այդ պահին էր, երբ ընկեր Բաղդասար-յանը աչքերը վրաս ուղղելով ասաց, որ գիրքը «հանգիստ թողնեմ»: Ես, իհարկե, շփոթվեցի և գիրքը «հանգիստ թողեցի»: Բայց երբ դասը վեր-ջացավ, երբ ես նորից ձեռքս գրքին տարա, նա-մականիշերը չկային. ասես կայծակ խփեց գլխիս: Գագիկը, որ իմ կողքին էր նստում, թե՝ ի՞նչ պա-տահեց, ես թե՝ նամականիշե՞րը... էլ բան չասա-ցի և, երբ քրտինքը վրաս տված կռացա գրասե-ղանի տակ, ի՞նչ տեսնեմ... նամականիշերս այն-պես են տրորվել Գագիկի կոշիկների տակ, որ մի երկուսն էլ կպել են ներբաններին...

Այստեղ արդեն աչքերս լցվեցին:

-- Այս ի՞նչ ես արել,— ասում եմ,— ախր այս ի՞նչ ես արել...

Նա թե՝

— Ազնիվ խոսք, ես հո դիտմամբ չեմ արել...

Տղաները հավաքվեցին մեր գլխին. տրորված նամականիշերի կտորտանքներն են հարթելով լցնում դիմացս ու սիրտ են տալիս, թե՝

— Իսկի բան էլ չի եղել, ընե՛, մենակ այս եր-կուսն են, որ...

Ինչպե՞ս հասկացնես, որ եթե նամականիշի մի ատամիկն էլ կտրված լինի, պիտի դեն նետես:

Իսկ Գագիկը մեղավորի պես նայում է աչքերիս ու ձայն չի հանում:

— Լա՛վ, Ֆիլո,— ասում են ինձ դեսից ու դե-նից,— ախր նա ի՞նչ մեղավոր է, որ կպել ես նրան:

Իսկ ես, թե՝

— Ո՞նց թե ինչու ես կպել... բա ո՞վ է տրորել ոտքերի տակ...

Եվ անազնվաբար միտս էլ չեմ առնում, որ ամեն ինչ իմ մեղքով է եղել, որ երբ ընկեր Բաղդասար-յանը բարկացել է վրաս, ծնկներիս վրա բացված գիրքը շփոթմունքից այնպես եմ գցել սեղանին, որ նամականիշերը թափվել են ու օրորվելով հա-սել Գագիկի ոտքերի տակ...

Բայց, իհարկե, եթե դուք էլ ֆիլատելիստ լի-նեիք, երևի դուք էլ ինձ նման անեիք: Մարդ այդ-պիսի ժամանակ պարզապես չի հասկանում, թե ինչ է ասում. բայց դա չի նշանակում, որ հե-տո արդարությունը մոռանա:

Իսկ ես մոռացա... Ա՜խ, չգիտեք, թե ինչ նա-մականիշեր էին...

«Յո-խո-խո՜»...

Հենց մեկը ձեզ արդեն ծանոթ Ֆերնանդո-Պոյի՝ 1899 թվականի հազվագյուտ նամականիշն էր. ի միջի այլոց, դա 20.000 բնակչություն ունեցող մի կղզի է իսպանական Աֆրիկայում, Գվինեայի ծո-ցում, մայրաքաղաքն էլ Սանտա-Իզաբելն է: Դրա համար ես 22 օր զրկել եմ ինձ նախաճաշի-կից և երեք անգամ էլ՝ կինոյից...



Երկրորդը «Ռուանդա-Ուրունդի»-ն էր, բաց մա-նուշակագույն ֆոնի վրա երկու գեղեցիկ շուշան-ներ ունեցող այն նամականիշը, որի ինչ լինելը

*մինչև իր կորստյան օրը չիմացա, թեև հանրագիտական բառարան չմնաց, որ չքրքրեի…*

*Ո՜խ, երրո՜րդը, երրորդը Սոմալիի ֆրանսիական ափերից մի հնագույն նամականիշ էր, երկու աշտարակ ունեցող մի բերդաձման պատկերով, որը, երկար որոնումներից հետո, պարզվեց, որ Ջիբութիի հուշակավոր մզկիթն է։ Այդ թանկագին նամականիշի համար ես չորս օր գրիպով պառկել եմ տանը։ Ես այն ձեռք գցեցի ութ տարեկան Վանիկ Հակոբյանից, հենց նրանից, որ մի երկու շաբաթ առաջ կարմրուկ էր հանել։ Փոխարենը պարսկական մի նամականիշ տվի, հիմար մի բան, ու չհասկացա։ Բայց վրաս էժան չնստեց։ Հակառակի պես այդ օրը նա իր տատիկի հետ կրկես էր գնացել ու այնքան սպասեցի անձրևի տակ, որ տուն եկա քառասուն աստիճան տաքության մեջ։*

*Ո՜ւֆ, ինչեր չեմ քաշել… Չորրորդը Մալթայի նամականիշն էր, խաչակրական զինանշանով և 1565 թվականի մեծ պաշարման հուշարձանով։ Այդ նամականիշին նայելիս ես պատկերացնում էի երկարամորուք մեկին՝ ասպետ Սմբատ Եվդոկիացուն, որը որպես թե մեծ քաջագործություն է կատարել այդ պաշարման ժամանակ։ Այդ նամականիշը ձեռք բերելու համար 83 տարեկան Միրզաջանյան Հովսեփի համար մի ամիս կաթի և մածունի հերթ եմ կանգնել։ Իսկ վեցերորդը…*

*«Յո-խո-խո՜ և մի շիշ ռոմ…»*

*Այո, դա իմ ամենասիրած նամականիշն էր, իսպանական, 1862 թվականի, Նիդեռլանդները արյունով ողողած դաժան կոմս Ալբայի նկարով նամականիշը։ Այն կիսով չափ յուղոտված էր. ես այնքան էի հետաքրքրվում դրանով, որ մեր հարևան քիմիկոս Դավթյանը հատուկ քննությունից հետո հայտնեց, որ դա յուղի հետք չէ, այլ՝ ռոմի, ծովայինների սիրած այդ թունդ խմիչքի հետքը։ Եվ ինչե՜ր չէի պատկերացնում, թե ինչ պայմաններում է այն թրջվել ռոմով։ Չի՞ կարող պատահել, մտածում էի ես, որ այն պատկանելիս է եղել մի հայտնի ծովահենի, որ այն փակցված է եղել մի շատ գաղտնի տեղեկություն կամ քարտեզ պարունակող ավազակային [illegible] վրա, և թրջվել ռոմով… Ես հաճախակի հիշում էի Ստիվենսոնի «Գանձերի կղզին» արկածային վեպը, որտեղ ծեր ծովային գայլը երգում է.*

— Տասնհինգ մարդ մեռելի սնդուկի վրա,
Յո-խո-խո՜ և մի շիշ ռոմ,
Խմիր, և սատանան քեզ մինչև վերջը կհասցնի,
Յո-խո-խո՜ և մի շիշ ռոմ…

*Հիմա, իհարկե, իմացար, թե այդ ինչ «Յո-խո-խո»-ներ էին, որ երբեմն ինձնից անկախ բացականչում էի պատմելու ժամանակ…*

*Եվ միայն «Գանձերի կղզի՜ն» էր հիշեցնում այդ նամականիշը։ Ո՛չ, նայելով այդ նամականիշին ես հիշում էի, որ երկու շատ հուշակված վեպեր՝ Ժյուլ-Վեռնի «Հինգ շաբաթ օդապարիկով»-ը և Տուրգենևի «Ծուխը» սկսվում են 1862 թվականով։ Ապա, ես գիտեի, որ 1862 թվականին, Զմյուռնիայում, Մեսրոպյան սաների ձեռքով սկսել է հրատարակվել հայկական առաջին աշակերտական թերթը՝ «Բողբոջը», որ նույն թվականին է ծնվել արևմտահայ մեծանուն գրող Արփիար Արփիարյանը, և հենց այդ տարվա հուլիսի 14-ին, ցարական ոստիկանության շտաբի պետ գեներալ Պոտապովի հրամանով կալանավորվել է Հնդկաստանից հենց նոր տուն վերադարձած մեր սիրելի բանաստեղծ Միքայել Նալբանդյանը…*



*Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ*

*Այո, զարմեր, որ ես նամականիշերի վրա նայում եմ այնպես, ինչպես նայում են լուցկու տուփերի և կամ կոճակների հավաքածուներով հիացողները։ Հենց միայն այդ հիանալի նամականիշը մի ամբողջ պատմություն էր ինձ համար. դրան նայելով ես հիշում էի, որ 1862 թվականին, հերոս Գարիբալդին մտածում էր Հռոմը գրավելով ի կատար ածել բաժան-բաժան արված Իտալիայի՝ իր*



17-Ա. Է.

թշվառ հայրենիքի, միութիւնը։ Հիշում էի, որ երբ շվեդացի Ալֆրեդ Նոբելը նիտրոգլիցերինի գյուտից հետո պատրաստում էր առաջին դինամիտը՝ Զեյթունի լեռնակիրճերը թնդում էին հայ ապստամբների խրոխտ երգերով, և արյունարբու Ազիզ փաշան, իր 30.000-անոց բանակով, գլխապատառ փախուստ էր տալիս մեր խիզախ հայրենակիցների առջևից...

Ահա թե ինչեր էին պատմում ինձ նամականիշերը, ահա թե ինչ թանկագին հուշեր արթնացնող նամականիշեր էր տարել Գագիկը...

Բայց... Ո՞վ էր մեղավորը։

Իհարկե, ես։

Եվ փոխանակ ընդունելու իմ մեղքը, խռովեցի անմեղ Գագիկից։

Եվ չեք էլ հարցնում, թե ինչ պատահեց հետո։

Հենց Ծաղկաձոր գնալուց առաջ, արձակուրդի նախօրյակին, նա, լուռ ու մունջ, իմ դիմաց դրեց նամականիշերի մի հիանալի ալբոմ, իհարկե, առանց նամականիշերի, և ասաց.

— Ես, իհարկե, չեմ կարող գտնել քո նամականիշերից, վերցրու դրանց փոխարեն...

Եվ ես, մոլի ֆիլատելիստս, անազնվաբար վերցրի, իսկ երբ հետևյալ օրը առավոտյան գնացքը մեզ տանում էր Ծաղկաձոր, հանկարծ նկատեցի, որ Գագիկը մեզ հետ չէ։ Կամացուկ հարցրեցի Վահանից, իսկ նա...

— Ո՞նց գար,—դառնորեն պատասխանեց նա,— դահուկների փողը ալբոմի տվեց...

Ահա բոլորը... Մի շաբաթ էր, որ մենք Ծաղկաձորում էինք. ես ինչպես որ գնացի՝ այնպես էլ ետ եկա. ընդամենը երկու անգամ եմ դահուկներս հագել, հագել եմ ու իսկույն ևեթ հանել, նստել բլրալանջին ու տանջվել...

Իսկ Ծաղկաձորում հիանալի օրեր էին անում. կարմիր արևը պեծին էր տալիս սառած ձնաշերտով ծածկված բլուրների վրա, տղաները սահում էին աղմուկ-աղաղակով, գլուխկոնծի տալիս ձների մեջ, իսկ նա՝ Գագիկը, այդ հիանալի էքսկուրսիայի կազմակերպիչը, նա, որ ինքն էր այնքան խնդրել ինձ և համոզել, որ Ծաղկաձոր գնամ՝ մեզ հետ չէր...

Ամոթ ինձ. վաղը դասարան մտնեմ թե չէ, Գագիկին տեսնեմ թե չէ՝ իսկույն ևեթ ներողություն պիտի խնդրեմ. ներողություն պիտի խնդրեմ բոլորի առջև, պիտի նվիրեմ և իմ դահուկները, պիտի ետ տամ և ալբոմը, որովհետև, ինչպես երևում է, դուցե և սրանից հետո ես այնքան էլ չզբաղվեմ նամականիշերով...

Ո՞վ գիտե, դուցե և զբաղվեմ, բայց ոչ այնպես, ինչպես զբաղվել եմ մինչև հիմա, որովհետև աշխարհում ամենաթանկագին բանը ընկերն է, և ոչնչով չի կարող ուրախանալ նա, ով փշրել է իր ընկերոջ սիրտը...




(Գիտա-ֆանտաստիկական պատմվածք)

ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

Բակը մեծ էր։ Տղան գրեթե ամբողջ օրը խաղում էր այդ մեծ բակում, որտեղ մի քանի ծառեր կային, թփեր, մի քիչ ավազ կար ու փոքրիկ ջրավազան։ Այս ամենը երկրագնդի բեկորն էր միայն, որ տասնամյակներ, շատ տասնամյակներ առաջ մարդիկ ստեղծել էին ծայրամասային մոլորակի վրա։

Բակի տափարակ կտուրով շենքում, որը մոլորակի վրա գտնվող միակ տունն էր, յուրաքանչյուր հինգ տարին մարդիկ էին գալիս բնակության։ Տղան գիտեր, նրան պատմել էին, որ սկզբում միայնակ էին գալիս մարդիկ, հետո եկել են ընկերներով, եկել են ընտանիքով, մնացել են հինգ տարի ու վերադարձել երկիր։ Ու այսպես տասնամյակներ շարունակ։

Բակում, ավազանի մոտ, տղան խաղում էր բոլոր այն խաղերը, որ ժամանակին սովորել էր երկրի վրա։ Խոնավ ավազից եգիպտական բուրգեր էր կառուցում, կառուցում էր ուղիղ պողոտաներով քաղաքներ ու տորմիղ էր ստեղծում ջրավազանում թղթե նավակներով։ Հետո միայնակ հենդիկ-հենդիկ էր խաղում կամ՝ հրթիռ-հրթիռ, իսկ վերջերս լուռ ու անշարժ նստում էր ծառերից մեկի տակ, հայացքը՝ երկնակամարին, նստում էր համկապես երեկոները, մութն ընկնելիս, և ձանձրանում էր ու տխրում։ Սակայն դա ևս խաղ էր,

նոր խաղ, որն ինքն էր հնարել։ Նա հերթապահ էր խաղում։

— Մանչո՛ւկ,— ձայն էր տալիս մայրը,— արդեն ուշ է։

Եվ ինչպես աշխարհի բոլոր տղաները, նա ներքուստ դժգոհում էր, որ խաղն ընդհատեցին ամենահետաքրքիր մասում։

— Լվացվիր,— ասում էր մայրը։— Հայրիկն ուր որ է կգա։

Տղան լվացվում էր, իսկ մայրն ստուգում էր, արդյո՞ք լավ է լվացել ականջները, ատամները, ծոծրակը, և ապա պատրաստում էր ընթրիքի սեղանը։

Տղան կանգնում էր պատուհանի առաջ ու նայում էր երկնքին։ Երկինքը երբեք ամպամած չէր լինում։ Սև, անսահման տարածության մեջ սփռված էին հազարավոր լուսավոր կետեր. դրանք աստղերն էին։ Արևն էլ նրանց մեջ էր։ Ամեն անգամ տղան դժվարությամբ էր այդ հսկայական բազմության մեջ կարողանում գտնել արևը, որովհետև նույնքան փոքր, նույնքան աննշմարելի էր այդ արևը։ Երկար ժամանակ տղան չէր հաշտվում այն մտքի հետ, որ այնքան սովորական ամենօրյա լուսատուն ծայրամասային այս մոլորակից երևում է որպես խղճուկ, անզոր մի աստղ։ Ցե-

— Որքա՞ն մնաց մեր վերադարձին,— ամեն երեկո հարցնում էր տղան։

— Քիչ,— պատասխանում էր մայրը ամեն երեկո։

Այդ քիչը օրեր էին, շաբաթներ, ամիսներ ու տարիներ։ Ամեն երեկո այդ «քիչը» ավելի էր քչանում։ Բայց հայրը ոչ թե ուրախանում էր, այլ ավելի տխրում։ Տղան վաղուց չէր տեսել հորը ծպտալիս։ Հայրը միշտ մռայլադեմ էր, մտախոհ ու քչախոս։

— Հայրիկը այսօր ուրա՞խ կգա տուն,— հարցընում էր տղան։

— Չգիտեմ. երևի՝ ուրախ, երևի՝ տխուր։

— Նա առաջ տխուր չէր լինում,— հիշում էր տղան։— Ներս մտնելիս միշտ ժպտում էր, համբուրում էր ինձ։

— Նա քեզ հիմա էլ է համբուրում,— ասում էր մայրը։

— Առանց ժպտալու,— ավելացնում էր տղան։

— Որովհետև օրը օրին մոտենում է հերթափոխի ժամկետը։

— Դրա համար պետք է ուրախանալ,— ասում էր տղան։

— Իսկ հայրիկը տխրում է,— կարծես ինքն իրեն, կիսաձայն ասում էր մայրը։

— Ինչո՞ւ։



րեկն ու գիշերը այստեղ արհեստական էին, որովհետև թե տունը և թե բակը գտնվում էին թափանցիկ զանգակի տակ, որը մարդկանց պաշտպանում էր տիեզերքից, անհունից, պաշտպանում էր ցրտից ու անսահման ունայնությունից։

— Ես էլ չգիտեմ։ Պատմում են, որ բոլոր նրանք, ովքեր եկել են այստեղ հերթապահելու, երկիր են վերադարձել տխուր և մարդկանց նայել են այնպիսի մի ժպիտով, կարծես ներողություն են խնդրում։

— Իսկ ինչո՞ւ է ուշանում հայրիկը։
— Չգիտեմ։ Նա երբեք չէր ուշանում։
Հայրը ետնաբակի փոքրիկ շինությունումն էր։ Ամբողջ օրերով։ Կարճատև ընդմիջումներով։ Ծայրամասային այս մոլորակի վրա նա արդեն չորս տարի հերթապահում էր։ Ետնաբակի շենքում, ղե-



կավարման վահանակի առջև նստած, նա ուշադրությամբ հետևում էր, թե արդյո՞ք տասնյակ կիլոմետրեր այստեղից հեռու անտեննան չի որսալու հեռու-հեռուներից հասնող ազդանշաններ։
Տասնամյակներ, շատ տասնամյակներ առաջ էին մարդիկ սկսել այս հերթապահությունը, սակայն տիեզերքի խավար լռությունը երբեք չէր խախտըվել, անհունի մեջ գլորվող և ոչ մի աշխարհի բնակիչ իր մասին լուր չէր ուղարկել։
Շատերն արդեն գտնում էին, թե իզուր է այդ հերթապահությունը։ Բայց մարդիկ շարունակում էին հնգամյա հերթափոխը։ Ծայրամասային մոլորակ էին մեկնում մարդիկ, որոնք խորապես համոզված էին, թե հինգ տարին իզուր չեն անցկացնելու հեռուներում։
— Հաջորդ հերթափոխին էլ այստեղ կմնանք,— մի քանի անգամ ասել էր հայրը։
— Չի կարելի։ Թո՛ւյլ չեն տա,— առարկել էր մայրը։
— Տասնհինգ տարի կմնանք, թեկուզ և քսան տարի,— պնդել էր հայրը, բարկացած քայլելով հատակի սալիկների վրա։
Մայրը միայն լռել ու ցավով նայել էր տղայի հորը։
... Դրսից ոտնաձայներ լսվեցին։ Տղան լռջացավ։ Նայեց մորը։ Հետո նստեցին սեղանի շուրջը։ Երրորդ աթոռն ազատ էր։ Քիչ հետո այդ աթոռին կնստեր հայրը։ Հետո լուռ կընթրեին։ Ընթրիքից հետո մի կես ժամ կզրուցեին երեքով աշխարհի ամենատխուր բաների մասին ու կգնային իրենց ննջարանները։
Դուռը բացվեց։ Շեմքին կանգնեց հայրը։ Լուսավոր, բարձրահասակ, թիկնեղ մի մարդ. բաց դռան մեջ երկնքի սև հենքի վրա։
— Հայրի՛կ,— գոչեց տղան, որովհետև չկարողացավ զսպել իրե՛ն, որովհետև հայրը այս երեկո ժպտում էր, որովհետև այդ ժպիտը այնքան տարօրինակ էր տղայի համար, ինչպես այստեղ ժամանելու առաջին օրերին աստղի նման փոքրիկ ու դժգույն արևը, որը ոչ լուսավորում էր, ոչ էլ՝ ջերմացնում։
— Բարի երեկո,— ասաց հայրը։ — Ձե՞ք ճանճրացել այստեղ։ Ոչինչ, ոչինչ... Քիչ մնաց։ Շուտով կվերադառնանք երկիր։ Ու անմիջապես կմեկնենք ծովափ։ Ծովը կարոտել եմ։ Կպառկենք ավազին ու կտապակվենք իսկական արևի տակ։ Հը՞.. Ինչու՞ եք լռել։ Ի՞նչ է պատահել...
Նա նստեց ազատ աթոռին ու սկսեցին ընթրել։ Հայրը շատախոսում էր, կատակում, անընդհատ հիշում էր երկիրը և հատկապես Սևանի ափին գտնվող հսկա քարաժայռը ու այն անձավը, որտեղ հինավուրց ավանդության համաձայն ապրելիս է եղել մարդկանց ատող ու մարդկանցից հեռու փախած մի ճգնավոր։ Հիշում էր անձավի մուտքի մոտ մնացած խարույկի հետքերը ու ծխից մրոտված երկու գլաքար։
— Իրոք, ի՞նչ է պատահել,— ընթրիքի վերջում հարցրեց մայրը։
— Արտակարգ՝ ոչինչ,— պատասխանեց հայրը։— Այսօր ազդանշաններ որսացի. սովորական ազդանշաններ։ Գիտես, հերթապահությունն իզուր բան չէ, ինչպես պարզվում է։ Մենք շուտով երկիր կվերադառնանք։ Մենք մեր գործն արեցինք, չէ՞։ Հիմա ավելի հեշտ կլինի այստեղ հինգ տարի անցկացնելը։ Ուրիշների համար։ Բայց մենք, իրոք՝ իզուր չվատնեցինք ժամանակը, չէ՞։ Գիտես,

մարդկանց համար ես էլ կարողացա մի գործ գոնե անել։ Թե չէ՝ ի՞նչ էր ստացվելու... Հիմարություն։

Այդ օրը նրանք երկար նստեցին։ Հայրն առանց դադարի պատմում էր. պատմում էր ազդանշաններից մասին, պատմում էր այն աշխարհների մասին, որտեղից եկել էին ազդանշանները. պատմում էր, որ մարդիկ անպայման կպատասխանեն նրանց՝ ովքեր ուղարկում են այդ ազդանշանները ու ափսոսում էր, որ այդ ժամանակ ինքն արդեն ծերացած կլինի։

— Ոչինչ, հայրիկ,— հանգստացրեց նրան տղան։— Ես արդեն մեծացած կլինեմ ու ինքս կգնամ։ Դու չես տխրի, չէ՞։

— Կարևորն այն է, որ դու երբեք չտխրես,— պատասխանեց հայրը։— Ամենից կարևորն այդ է։ Մարդկանց համար մի լավ բան անելիս՝ այլևս չես տխրում։ Ու արևն էլ հանկարծ մոտենում է, մեծանում, դառնում ամենասովորական, աշխարհում ամենատաք ու ամենասիրելի արևը։ Ուզո՞ւմ ես, նայենք արևին։

Հայրն ու տղան մոտեցան պատուհանին, որից այն կողմ, թափանցիկ զանգակից էլ այն կողմ— սև պաստառի վրա ծիածանի կաթիլներ էին սփռված։

— Տեսնո՞ւմ ես, ինչ մեծ է և որքան տաք ու լուսավոր,— շշուկով ասաց հայրը։

— Տեսնում եմ, հայրիկ։ Ես այդքան մեծ արև կյանքումս չեմ տեսել,— ասաց տղան, հայացքը չհեռացնելով հատկապես մի փոքրիկ կաթիլից, որը արևն էր։

# ՏԱՏԻԿ, ԴՈՒ ՖԻԶԻԿԱ ՉԳԻՏԵՍ

ԳՐԻԳՈՐ ՀԱԿՈԲՅԱՆ

*Հայրիկը Զավենի համար մի զույգ կոշիկ էր գնել։ Երբ Զավենը դպրոցից տուն վերադարձավ և կոշիկները տեսավ, ուրախությունից սկսեց թռչկոտել։ Հետո հները հանեց և նորերը հագավ։*

*— Հո չե՞ն սեղմում,— հարցրեց տատիկը։ — Եթե սեղմում են, մի՛ հագիր, հայրիկը կտանի կփոխի։*

*— Չէ՛, չէ՛, շատ լավն են, կարիք չկա փոխելու։*

*Բայց Զավենը ճիշտ չէր ասում։ Քիչ հետո, երբ տատիկը գնաց խոհանոց նախաճաշ բերելու, Զավենն իսկույն դուրս եկավ բակ, որտեղ նրան էր սպասում Վազգենը։*

*— Տե՛ս, ես նոր կոշիկ ունեմ,— պարծեցավ Զավենը։*

*— Հա՞, էս ինչ լա՜վն են։ Հայրիկիս կասեմ, որ ինձ համար էլ առնի,— ասաց Վազգենը, և նրանք սկսեցին իրենց սովորական խաղը՝ պահմտոցի։ Քիչ անց Զավենն արդեն կաղում էր։*

*— Հը՞, կոշիկներդ սեղմու՞մ են,— հարցրեց Վազգենը։*

*— Հա, սեղմում են,— ասաց Զավենը խեղճացած։ — Արի գնանք մեր տուն, կոշիկներս փոխեմ։*

*— Գնանք։*

*Երբ նրանք մտան տունը, Վազգենը բռնեց Զավենի թևը։*

*— Ես կարող եմ քո կոշիկները մեծացնել,— ասաց նա։*

*— Ինչպե՞ս,— ուրախացած հարցրեց Զավենը։*

*— Հիշու՞մ ես, անցյալ օրը, երբ եղբայրս ֆիզիկայի դաս էր սովորում, մեզ ինչ ասաց։*

*— Ի՞նչ։*

*— Նա ասաց, որ բոլոր առարկաները տաքությունից լայնանում են, ցրտից սեղմվում, կուչ են գալիս։*

*— Հա, հիշում եմ։*

*— Դե քո կոշիկներն էլ ցրտից կուչ են եկել ու ոտներդ սեղմում են։ Որ տաքացնենք, կլայնանան։*

*Տատիկը վառարանը վառել և Զավենի համար նախաճաշ էր տաքացնում։*

*Նրանք իսկույն գործի անցան։*

*— Ա՛յ տղաներ, էդ ի՞նչ եք անում,— ձայն տվեց տատիկը։*

*— Կոշիկներս ենք լայնացնում,— ասաց Զավենը։*

*— Ինչպե՜ս թե։ Բա վառարանի վրա էլ կոշիկ կլայնացնե՞ն,— անհանգստացավ տատիկը։*

*— Տատիկ, դու ֆիզիկա չգիտես, սուս կաց... չէ՞ որ առարկաները տաքությունից լայնանում են...*

*— Դե, գլխիս գիտնական մի՛ դառնա, կոշիկներդ կփչացնես,— ասաց տատը և գնաց սենյակ։*

*Քիչ հետո, երբ տունը լցվեց այրվող կաշվի հոտով և նրանք վառարանի վրայից վերցրին կոշիկները, տեսան, որ ավելի են փոքրացել, կուչ եկել։*



ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

# ԱՆՏԵՍԱՆԵԼԻ ՍՏՎԵՐՆԵՐ

ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

## ԱՆԳԼԻԱԿԱՆ ԱՅԳՈՒՄ

Ուրեմն, իսկապես, այդ մարդու ձեռքից ամեն ինչ գալիս էր։ Հաջորդ օրը Վարյուսը մեր տուն եկավ։ Օրը կիրակի էր, ու բոլորս տանն էինք։ Հայրս պատրաստվում էր գնալ պարոն Մարգար Բաղմանյանի «Մաքուր մատուցեմ» սրճարանը։ Մերոնք միշտ էլ Վարյուսին սիրով էին ընդունում։ Դռնես պատշգամբից փայտե ոտքի թխթխկոցը լսելով, հայրս ժպտաց.

— Վարդուշ, էս վարպետ Վարյուսն է։

Իսկապես վարպետ Վարյուսն էր դուռը թակողը։ Հայրս ընդառաջ գնաց, դուռը բացեց ու ուրախացած ասաց.

— Բարո՜վ, հազա՜ր բարի, վարպե՛տ Վարյուս։

Մայրս աթոռ առաջարկեց նրան, հայրս՝ օղի։ Վարյուսը նստեց, հորս հետ մի-մի բաժակ օղի խմեցին ու սուջուխ կերան։ Հետո վարպետ Վարյուսն ասաց.

— Երեխան լուր բերեց,— նա նայեց կոտրված հայելուն,— ուղարկիր մեր տուն, կսարքեմ։

— Վա՜յ, Վարյուս ջան։

— Դժվար չի, միայն երեք ռուբլի կտաս, կոոպերատիվից հաստ ապակի կառնես։

— Ես քո լավության տակից, վարպետ Վարյուս...

— Դատարկ բան է։

Հայրս ու վարպետ Վարյուսը միասին դուրս եկան տնից։ Հավանաբար հայրս տարավ վարպետ Վարյուսին «Մաքուր մատուցեմ» սրճարանում հյուրասիրելու։ Իսկ երեկոյան հայրս ու մաշակար Երեմը հայելին տեղափոխեցին վարպետ Վարյուսի արհեստանոցը։

Հաջորդ օրը ես ու Կարոն դպրոցում հանդիպեցինք Ռուբենին։ Կարոն գոռաց.

— Է՜յ, Ռուբեն— մոտավ...

Բայց նա չվերջացրեց, ես բամփեցի նրա գլխին։

— Բարև, Ռուբ ջան։

— Բարև, տղերք,— ուրախացավ Ռուբենը,— որ ասում էի՜։

Ես պայուսակիցս հանեցի ճեղապարսատիկս ու զոռով նվիրեցի նրան.

— Ա՛ռ, Ռուբ ջան, շատ շնորհակալ եմ։

Մենք թաքուն ծլկեցինք դպրոցի բակից։ Ռուբենն ասաց, որ իրենց այդ օրվա դասերը «մի բան չեն», ու դրանից հետո ես ու Կարոն էլ հասկացանք, որ մեր այդ օրվա դասերն էլ «մի բան չեն»։ Երեքով գնացինք Անգլիական այգի։ Նախ այնտեղ կարող էինք պատահաբար հանդիպել պատկոմներին և հետո հսկայական կաղնի ծառերի տակ թափված դեղին տերևների մեջ կարող էինք երկարուկ, պսպղուն կաղիններ հավաքել։ Գնում էինք ուրախ, շվշվացնելով։ Այն, որ բացակայել էինք (ինչպես Ռուբենն էր ասում՝ հուրհավիտյան), ուրախացրել էր մեզ։ Ճանապարհին Ռուբենը երգեց իր սիրած երգը.

Ջի, ձի, ձի,
Բաշը՝ փրփուր,
Աչքերը՝ հուր...

Ես հետաքրքրվեցի.

— Ռուբ, քեզ ո՞վ է սովորեցրել այդ երգը։

— Հայրիկս, էլ ո՞վ։

— Լավ երգ է։

— Շա՛տ լավն է, հեղափոխական։

Մտանք Անգլիական այգի։

Այդ այգին սիրուն էր տարվա բոլոր եղանակներին, բայց հատկապես գեղեցկանում էր աշնանը, երբ ոսկեգույն տերևները պոկվում էին հսկայական ծառերից ու, ընկնող թղթի նման տատանվելով, թափվում հին խաշամի վրա։ Ցերեկները այգին ամայի էր լինում, միայն տեղ-տեղ մութ ու խորհրդավոր ծառուղիներում երևում էին ձեռք-ձեռքի տված աղջիկ ու տղա, որ, չգիտես ինչու, իրար հետ չէին խոսում, թեև երևում էր, որ գոհ են իրարից։

Երկար ժամանակ, խաշամը խշխշացնելով, կաղին էինք հավաքում, հետո մտանք այգու ամենամութ ծառուղին, որի ծայրին մի փոքրիկ ժայռ կար։ Այդ ժայռի տակից, մաքուր ավազը դողացնելով, մի աղբյուր էր դուրս գալիս։ Դա շատ տարօրինակ աղբյուր էր, չէր ցայտում, այլ եռում, խլթխլթում էր կրակի վրա դրված կաթսայի նման։ Ջուրը ամռանը քիչ էր լինում, իսկ աշնանն ու գարնանը՝ առատ։ Քաղաքի փողոցներում եղած ծորակների ջուրն ավելի սառն էր, ավելի համեղ, բայց մենք սիրում էինք փորի վրա պառկել այդ աղբյուրի մոտ ու բարակ կումերով ծծել գոլ, անհամ ջուրը։ Խորհրդավոր էր այդ ծառուղին, դրանից այն կողմ ցանկապատն էր, հետո փողոցը,

Սկիզբը՝ №№ 8, 9։



որի ծայրին շրջակա գյուղերից եկող սայլերի իջևանատներն էին ու նավթի խանութ-պահեստները: Նույնիսկ գարնան կիրակի օրերին, երբ քաղաքի կեսը լցվում էր Անգլիական այգի, աղբյուրի ծառուղին դատարկ էր լինում: Մարդիկ զբոսնում էին այգու կենտրոնի կլոր ծառուղում, երիտասարդները՝ հավաքվում բացօթյա ճաշարանում կամ գարեջրի կրպակների առաջ, ծերունիները արևկող էին անում կենտրոնական ծառուղու փայտե նստարաններին ու ակնոցները քթներին ուղղած լրագիր կարդում, եթե, իհարկե, չէին վիճում իրար հետ՝ թազբեհները կատաղի չխկչխկացնելով: Իսկ աղբյուրի ծառուղին մնում էր խոնավ, մութ ու խորհրդավոր, որ մենք գնանք այնտեղ, հասնենք ծայրին, փորի վրա պառկելով խմենք գոլ ջուրն ու երազենք... երազենք ամեն ինչի մասին. սպիտակ ձիու.

Ձի, ձի, ձի,
Բաշը՝ փրփուր,
Աչքերը՝ հուր...

Երազենք հեղափոխության մասին, որ բերել էին «պապոզավոր» բանվորները: Պատկոմների մասին, որ մեզանից ընդամենը մի քանի տարով էին մեծ, բայց մեր երկրի շինարարներն էին.

Պա-տա-նի կոմունար,
Դու մեր երկրի շի-նա-րար...

Երազենք անհուն-անսահման գանձերի մասին, որ մեր կարդացած գրքերում հողի տակից հանում էին ավազակները, նավերի միջից՝ մի ոտանի նավաստիները, քարանձավներից՝ մեզ հասակակից երեխաները...

Ամենալավը երազելն էր, դա լավ էր և՛ կոնֆետի թղթերից, որոնք վերջ ի վերջո ձանձրացնում էին, և՛ կաղիններից, ու, ճիշտն ասած, մենք ավելի շատ դասից փախչում էինք այս ամայի ծառուղիներում երազելու համար:

— Ասում են, այս ջուրը սարերից է գալիս,— ասաց Ռուբենը:

— Մասիսից,— հաստատեց Կարոն:

Ես նրանցից ետ չմնալու համար հնարեցի.

— Մասիսի տակ մեր քաղաքից տասնութ անգամ մեծ ծով կա:

Եթե ես հարյուր կամ հազար ասեի, ընկերներս չէին հավատա, որովհետև հարյուրն ու հազարը կլոր թվեր են: Մարդը կլոր թվերով է փչում, դրա համար էլ ես ասացի տասնութ անգամ մեծ, ու ընկերներս հավատացին կամ, համենայն դեպս, այնպես ցույց տվին, թե հավատում են: Ռուբենը նույնիսկ, հաստատեց.

— Ճիշտ է:

Հետո մենք խոսեցինք այն մասին, որ մի քանի տարի հետո (որոշված բան է) այդ ծովի կափարիչը (չգիտեմ ինչու, մեզ այդ «ծովը» կափարիչով ծածկված կաթսա էր թվում) կվերցնեն, ու դրա վրա հսկայական զբոսանավեր կսկսեն աշխատել, հենց այնպես, որ աշխատանքից հետո մարդիկ ուրախանան...

Նստել էինք խոնավ խաշամին, ցուրտն աստիճանաբար նեղում էր մեզ, բայց «կափարիչը հանած ծովի» ու «հենց այնպես» լողացող զբոսանավերի երազանքն այնքան գրավիչ էր, որ ցրտից արդեն դողացող Ռուբենն ասաց.

— Հայտնի է, նավերը ոսկեգույն կլինեն, իսկ առագաստները՝ սպիտակ, նավաստիները՝ բարձրահասակ, սև, երկար ծխամորճերով, ես տեսել եմ:

— Որտե՞ղ,— զարմացավ Կարոն:

— Նկարում, մեր տանը մի ռուսերեն ժուռնալ կա:

— Ժուռնալն ի՞նչ է։
— Դե, մի տեսակ լրագիր է, միայն թերթերը շատ են ու նկարները՝ գունավոր։

Ես հանկարծ հիշեցի մեր լրագիրը։

— Լսիր, Ռուբ, լրագիրը բերի՞ր։
— Չէ։
— Ո՞նց թե։

Լրագիրը մեզ ետ բերեց երազների աշխարհից։ Ռուբենն սկսեց ավելի կատաղի դողալ, Կարոն վեր կացավ տեղից։

-- Գնանք, կմրսենք։

Բայց Ռուբենը դեռ չէր պատասխանել իմ հարցին։ Երբ մենք դանդաղ շարժվեցինք դեպի ծառուղու ծայրը, հանկարծ նա ասաց.

— Տղերք, մի բան եմ ուզում ասել, բայց երդվեք, որ մարդու բան չեք ասի։
— Ի՞նչ բան։
— Չէ, նախ՝ երդվեք։

Ռուբենի աչքերից երևում էր, որ մի բան տանջում է նրան, մեր հետաքրքրությունը վառվեց.

— Ազնիվ պատվական,— ասացինք մենք։

Ու միայն դրանից հետո Ռուբենն սկսեց պատմել կցկտուր, հուզմունքից ու ցրտից կակազելով.

— Քնելուց առաջ հայրիկը լրագիր է կարդում, իսկ ես սովորում եմ դասերս։ Երեկ էլ նա բացեց լրագիրը ու ես հիշեցի, որ ինձ մոտ էլ լրագիր կա։ Հանեցի ու սկսեցի կարդալ։ Հետաքրքիր բան չկար, միայն անհասկանալի էր Պ. Դ. Նախագահը։ Ես մոտեցա հայրիկին ու հարցրի, թե ինչ է նշանակում Պ. Դ. Նախագահը։ Նա գլուխը բարձրացրեց ու իմ ձեռքի լրագիրը տեսնելով զարմացավ.

«Այդ ի՞նչ է»։

«Հին լրագիր»։

«Որտեղի՞ց»։

«Դերոյենց կոտրված հայելու միջից է դուրս եկել»։

Հայելու մասին ես արդեն նրան ասել էի, ծիծաղեց.

«Նոր լրագրերը կարդացինք պրծանք,— ասում է,— հիմա էլ հներն սկսենք, տուր տեսնեմ»։

Լրագիրն առավ, նայեց։

«Ճիշտ է,— ասաց,— այս լրագիրը տասնինը տարի առաջ է տպվել։ Իսկ Պ. Դ. Նախագահը նշանակում է Պետական դումայի նախագահ։ Այն ժամանակ մի այդպիսի բան կար Պետերբուրգում։ Պատգամավորներ էին հավաքվում, կմեծանաս կսովորես։ Հարուստ-հարուստ մարդիկ էին, ցարի ընկերները, սա էլ նրանց նախագահն էր»։

«Բա ինչո՞ւ է արաղաղի նման»,— հարցրի ես։

«Դա ծաղրանկար է,— ասում է,— այդպես անում էին»։

Հետո նա ինձ կարգադրեց, որ գնամ քնելու, իսկ լրագիրը մնաց նրա սեղանին։ Երկար ժամանակ քունս չէր տանում։ Մտածում էի այդ դու-



Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

մայի մասին, որտեղ հավաքվում էին ցարի ընկերները։ Ասում էր, տեսնես ո՞ւր են գնացել հիմա դրանք, ա՛յ, դրանցից մեկը ձեռքս ընկնե՜ր։ Հայրիկը գլուխը կախած դեռ կարդում էր։ Ես այդպես էլ քնեցի ու երազումս տեսա ցարի ընկերներին։ Բոլորը արքայազնի նման էին, միայն գլուխներն էին մարդու, իսկ քթերի փոխարեն՝ երկար կտուցներ։ Մեկը կանգնել էր կենտրոնում ու բարձրաձայն ծուղրուղու էր անում, «Ես Պ. Դ. Նախագահն եմ»,— ասում էր ու ինձ լեզու ցույց տալիս։ Ես մի քար վերցրի ու շպրտեցի նրա վրա։ Բայց քարը նրան չկպավ, ընկավ հատակին ու թխկաց։ Ես աչքերս բացեցի։ Հայրիկը քայլում էր սենյակում, այդ նրա փայտե ոտքն էր թխկում հատակին։ Տղերք, ես երբեք նրան այդքան հուզված չեմ տեսել։ Ձեռքերը դողում էին, ձեռքի մեջ դողում էր հին լրագիրը։ Ես ապշած նայում էի նրան, երբ ականջիս հասան նրա խոսքերը.

«Մի՞թե հայկական թերթերն էլ են տպագրել»։

«Հայրի՜կ»,— ձայն տվեցի ես։

Նա լրագիրը գցեց սեղանին ու մոտեցավ ինձ.

«Դու քնած չե՞ս, Ռուբեն»։

«Նոր զարթնեցի»։

«Հա, դե, քնիր»։ Ու լույսը մարեց։

Առավոտյան ես նրան ասացի, որ լրագիրը պետք է քեզ վերադարձնեմ։ Նա տխուր էր, հոգնած, թվում էր, թե ամբողջ գիշերը չէր քնել։ Երկար նայեց ինձ, հետո կարծես ամաչեց ու ասաց.

«Լրագիրը ես ա՛յսօր դնեմ իր տեղը, որ ամեն ինչ կարգին լինի, այդպես էլ կասես Դերենիկին»։

Մենք կանգնած էինք ամայի ծառուղում։ Ռուբենի պատմածը հետաքրքրել էր մեզ, թեև դրանից շատ բան չէինք հասկացել։

— Հետո՞,— հարցրեց Կարոն։

— Հետո էլ ոչ մի բան,— պատասխանեց Ռուբենը։

## ԱՅԳԵՔԱՂԻ ԵՐԳ

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

Հեռո՜ւ, հեռո՜ւ, սարի վրա
Թել-թել անձրև է մաղում,
Իսկ դաշտերում արև է վառ,
Ու խաղող ենք մենք քաղում։

Ինչքա՜ն լավն են, ինչքա՜ն սիրուն
Ողկույզները ոսկեհատ.
Մեկը ասես գոհար լինի.
Մեկը՝ սադափ, մեկը՝ սաթ։

Տեսեք, ոնց որ նախշուն պարան,
Կապեց պայծառ ծիածան.
Կռունկները շարան-շարան
Ամպի տակով անց կացան։

Անձրև՛, անձրև՛, հեռո՜ւ գնա,
Արև՛, բե՛ր մեզ օրեր տաք,
Քաղենք արագ, որ չմնա
Խաղողը սառ ձյունի տակ։

— Ի՞նչ կա որ,— ասաց Կարոն,— լրագիրը թող տեղը դնի։

— Բանն այդ չի,— մտամոլոր ասաց Ռուբենը,— ախր մենք ամեն օր լրագիր ենք ստանում, մեր տանը լրագիր շատ կա...

Գլխի էինք ընկնում։ Հին լրագրում ինչ-որ բան հուզել էր Վարյուսին։ Բայց ի՞նչը կարող էր հուզել հաշմանդամ ատաղձագործին տասնինը տարի առաջ տպագրված լրագրում։ Գուցե մի բան կար երկար-երկար հոդվածներում։ Ափսոս, որ մենք դրանք չկարդացինք։

Գնում էինք տուն։ Ամբողջ ճանապարհին ես մտածում էի Վարյուսի գիշերային արարքի մասին։ Ինչքան մտածում էի, այնքան համոզվում էի, որ Ռուբենն այդ բոլորը երազում է տեսել։ Երբ նա բաժանվեց, ես Կարոյին այդպես էլ ասացի։

— Երևում է, այդպես է,— պատասխանեց Կարոն։

Բայց այդ օրից ատաղձագործ Վարյուսը մեզ համար ավելի խորհրդավոր դարձավ։

Հինգ օր հետո հայրս ու մաշակար Երեմը Վարյուսի արհեստանոցից մեր հայելին բերին։ Ես չէի կարող ստուգել, թե հին լրագիրը հայելու հետևի՞ն է արդյոք, չնայած մի տեղ, մի միլիմետրանոց ճեղքից լրագրի երիզ էր երևում...

(Շարունակելի)

# ԿՈՃԱԿՆԵՐԸ

ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Նա մի անկյուն քաշված լսել էր մեծ եղբոր խոսակցությունը ուրիշ երկու դպրոցականների հետ՝ կցկտուր խոսքեր այն մասին, թե հավաքելու են երկաթի կտորներ, էլի ուրիշ դեն գցած բաներ... տանելու են հանձնեն... Նա չէր հասկացել, թե՝ ում, և դրա համար դպրոցին փող պետք է տային:

Նա մոտեցել էր, որպեսզի ավելի լավ հասկանա, բայց տղաները ծիծաղել էին նրա վրա. մեկը ասել էր, որ դա նրա խելքի բանը չէ, իսկ մեծ եղբայրը, թե՝ «Գնա խաղա, մեզ մի՛ խանգարի»: Նա նորից քաշվել էր իր անկյունը և մտածել, որ դեռ պետք է շատ բան իմանա, որպեսզի իր վրա չծիծաղեն: Մտածել էր այն երկաթի կտորների մասին և որոշել, որ չարժե հավաքել այդ երկաթները, անել ճիշտ նույնը, ինչ նրանք են անում: Ավելի լավ է՝ հավաքի... մատիտ, լուցկու տուփ, գրչածայր... չէ, չի լինի... կոճակներ... կլոր են և սիրուն: Մայրը չի բարկանա, մանավանդ, որ նա էլ է կոճակներ սիրում և լավ բարեկամ է կոճակների խանութում աշխատող կնոջը: Երբ խանութում ուրիշ հաճախորդներ չեն լինում, կոճակներ վաճառողն ու մայրը երկար խոսում են: Եվ ինքը ձանձրանում է, մոր փեշն է քաշում, նրանց ասելով՝ չարություն է անում: Այդ ժամանակ մորաքույրը կռանում է և լուրջ ձևանալով, միշտ նույն կատակն է անում՝ «Այսօր անունդ ի՞նչ է»: Ինքը չի պատասխանում: Մորը հարցնում է. «Ծները կերե՞լ են նրա լեզուն»: Մայրն էլ թե. «Քիչ առաջ լեզուն բերանումն էր»: Ինքը սպասում է, որ նրանք ուրիշ նոր խոսքեր կասեն: Դրա համար է լռում: Երբ տեսնում է, որ ոչ մի նոր բան պիտի չլինի, ասում է. «Իմ անունը Մեսրոպ է»: Մայրը և կոճակների խանութի մորաքույրը ծիծաղում են, թե վերջապես ձայնը դուրս եկավ: Ինքը չի հասկանում, թե այդտեղ ինչ կա ծիծաղելու: Այդպես ուրեմն, նա կոճակ կհավաքի, կտա այդ մորաքրոջը և կասի, որ փողը թող տա իր եղբոր դպրոցին և թող այդ «լոպպազները» իմանան, որ մենակ իրենք չեն կարող օգնել դպրոցին: Բայց մինչև հավաքելը ոչ ոքի ոչինչ չի ասի: Դա կլինի իր գաղտնիքը:

Մեծերը ուշադրություն չէին դարձնում նրա այդ նոր սովորույթին. երեխա է, թող մի բանով զբաղվի: Եվ ինքը ուրախանում էր, որ ոչ ոքի մտքով չի անցնում, թե ինչու է կոճակներ հավաքում: Մանկապարտեզում իրենց խմբի մի աղջրկա զգեստին սիրուն կոճակ տեսնելով, ասել էր նրան. «Կտրեմ տանեմ, հա՞»: Աղջիկը լաց էր եղել ու չէր թողել, որ կտրի: Այ թե ինչպիսի չար աղջիկներ են լինում, բայց երբ իր հագի զգեստի կոճակներից մեկը թուլանում, պոկվում էր, ինքը չգիտեր՝ տոպրակի մե՞ջ դնի, թե՞ տա մորը, որ կարի, ամրացնի:

Տոպրակն ուռչում-մեծանում էր, հետն էլ՝ Մեսրոպի ուրախությունը: Կոճակները լինում էին մեծ ու փոքր, տեսակ-տեսակ, գույնզգույն: Բայց անհամ բոլորովին անսպասելի մի վտանգ եկավ կախվեց տոպրակի գլխին: Կոճակի կարիք ունենալու դեպքում, մայրիկը սովորություն դարձրեց այն խառնել ու փնտրել իր ուզածը: Սկզբում նա Մեսրոպին հարցնում էր. «Այս մեկը վերցնե՞մ», Մեսրոպը մի քիչ թթված դեմքով միայն գլխով էր անում: Մայրն, իհարկե, կռահում էր, որ Մեսրոպն այնքան էլ չի ուզում տալ, բայց վերցնում էր: Հետո այնպես ստացվեց, որ վերցնում էր առանց հարցնելու: Տանը ոչ ոք չհասկացավ, թե ինչու Մեսրոպը մեկ տխրում էր, մեկ՝ կամակորություններ անում: Ինքը ոչ ոքի ոչինչ չէր ասում և վիրավորվում էր, որ իրեն չեն հասկանում: Բռունցքը բերանին դեմ տված՝ նա երկար մտածեց, ապա մի օր ձեռք բերեց հոր ածելու շեղբերից և սկսեց թաքուն կտրել ուրիշների և երբեմն նույնիսկ իր զգեստի կոճակները: Նա չէր ուզում, որ տոպրակը գնալով դատարկվի և իր «չարչարանքը իզուր կորչի»:

— Պիջակի կոճակը պոկվել է, մա,— ասում է մեծ եղբայրը:

— Վրայիդ շորը շնորհքով հագնես՝ չի պոկվի: Լավ է՝ գոնե Մեսրոպը հավաքում է ձեր կորցրած կոճակները:

Մեսրոպը ձայն չհանեց. հավաքում է, բայց դպրոցի համար: Մայրը քրքրում էր տոպրակը, որոնում...

— Նազիկ, այս վերնաշապիկի կոճակը...— լսվում է հայրիկի ձայնը:

— Այս տանը առավոտից իրիկուն նստեմ կոճակ կարեմ՝ չեմ հասցնի...

Մեսրոպը ձայն չհանեց. թող իր կոճակներին ձեռք չտային, ինքն էլ խելոք կմնար: Մեծ եղբայրը երկաթ է հավաքում, ոչ ոք նրան չի անհանգստացնում: Ինքը կոճակ է հավաքում, մայրիկը վերցնում է... Բա սա ճի՞շտ բան է: Ի՞նչ անենք, որ նա «մեծ եղբայր» է: Երբ դպրոցում ստանան այդ կոճակների փողերը և իմանան, պիտի զարմանան, հետո՝ «մեծ եղբորը» պիտի կանչեն ուսուցչանոց և ասեն. «Մեսրոպը՝ քո փոքր եղբայրը, քեզանից առաջ անցավ»:

...Ածելու շեղբով Մեսրոպն զգուշությամբ կըտրում էր կոճակը։

— Այդ ի՞նչ ես անում, — մայրն այնպես ճչաց, որ շեղբն ու կոճակը ձեռքից ընկան։ — Գործի մեջ թաղված եմ, գլուխս քորելու ժամանակ չունեմ, սա կոճակներ է պոկում։ — Եվ ապտակեց։

Մեսրոպը լաց չեղավ։ Ձեռքը այտին շփելով նա մտածում էր՝ ասի՞, թե՞ լուռ մնա։ Ոչինչ չասաց, որովհետև բարկացած ժամանակ մեծերը չեն ուզում լսել փոքրերին։

Այն, ինչ տեղի ունեցավ այդ երեկո, նման էր ծնողական ժողովի։ Մայրը պատմում էր, պատմում ու բարկանում։ Հայրիկը ժպտում էր, զըսպում և ուզում էր խիստ երևալ։ «Մեծ եղբայրը լրջորեն թափ էր տալիս գլուխը և կրկնում դըպրոցում լսած հանդիմանությունները՝ «չե՞ս ամաչում», «անհարմար չե՞ս զգում» և այլն։ Եվ այդ խոսքերն ասում էր նա, ում պատճառով Մեսրոպն սկսեց կոճակ հավաքել։ Բայց տղան համառորեն լռում էր և մտածում միայն, թե ինչպես մինչև վերջ հասցնի իր սիրած գործը։ Հանկարծ իրենից չխլե՞ն կոճակների տոպրակը... Հենց վաղը պետք է...



Նկ. ՀՐԱՉՅԱ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ

Մեսրոպը գիշերը վատ քնեց։ Բայց հաջորդ օրը, մանկապարտեզից վերադառնալուց հետո, կոճակների տոպրակը թևի տակ՝ նա թաքուն դուրս եկավ տանից, երբ մայրը, անտեղյակ, գործ էր անում խոհանոցում։ Կոճակների խանութը գտնվում էր հենց իրենց շենքի նույն մայթին, այնպես որ ավտոմեքենաներից զգուշանալու կարիք չկար։

Խանութում ընդամենը մի հաճախորդ կար։ Մեսրոպն սպասեց մինչև նրա դուրս գալը։ Ապա արագ մոտեցավ վաճառասեղանին։

— Բարև ձեզ, — ասաց նա մեծավարի։

— Բարև, — կոճակների մորաքույրը զարմացած էր։

— Ես մի տոպրակ կոճակ եմ բերել։ — Դրեց վաճառասեղանին։

— Ես ի՞նչ անեմ քո կոճակները, — ժպտաց մորաքույրը։

— Վերցրեք և փողը տվեք դպրոցին։

— Ի՞նչ դպրոց։

— Եղբորս դպրոցին։

Մորաքույրը փորձեց հասկանալ, հետո գրպանից հանեց մի քսանկոպեկանոց, պարզեց Մեսրոպին և ասաց.

— Վերցրու, պաղպաղակ առ քեզ համար։

Մեսրոպը պաղպաղակ սիրում էր, բայց նա այնպիսի ժպիտ տեսավ մորաքրոջ դեմքին, որ իրեն վատ զգաց։ Նրան թվաց, թե ապտակեցին, և մայրը չէր ապտակողը։ Նա ատամները սեղմեց, որպեսզի լաց չլինի, և դուրս փախավ խանութից։

Երկու օր Մեսրոպն իրեն հի-

*ԱԶԱՏ ՎՇՏՈՒՆԻ*

# ՄԱՆՈՒԿՆԵՐ ԻՄ ՍԻՐԱՍՈՒՆ

Ձեր սիրով եմ հարբած,
Ձեզ համար եմ գրում,
Ծաղիկներ իմ նորաբաց,
Թիթեռներ թռվռուն։
Հույզերով միշտ անմար
Ձեզ երգեր եմ ասում,
Գրում եմ ձեզ համար,
Մանուկներ սիրասուն։

Ուր էլ որ դուք լինեք,
Երկրումն իմ վառ, ազատ,
Դուք բոլորդ էլ իմն եք,
Սիրելի, հարազատ։
Տեսնում եմ ձեզ հավետ
Ու ձեր ձայնն եմ լսում,
Ծաղիկներ բուրավետ,
Մանուկներ սիրասուն։

Ապրեցեք ծիծաղկոտ,
Բալիկներ իմ անգին,
Բույր տվեք միշտ ծաղկող
Եվ խնդուն մեր կյանքին։
Երջանիկ մեծացեք,
Դարձեք կուռ և հասուն.
Հասեք մեզ և անցեք,
Մանուկներ սիրասուն։



# Ուլիկ

Մի ուլիկ է,
Սիրունիկ է։
Ե՛վ նայում է,
Ե՛վ մայում է.
— Մե՜—մե՜, մե՜—մե՜։
Մաման ո՞ւր է։—
Չկա, լուռ է։
Հեկեկում է,
Մըկըկում է.
— Մե՜—մե՜, մե՜—մե՜։—
Ա՛յ դու բալիկ,
Սիրուն ուլիկ,
Իմ սևուլիկ։
Մի՛ հեկեկա,
Մի՛ մըկըկա,
Մայրդ չկա՞։
Հիմա կգա,
Կաթիկ կուտես,
Կթռչկոտես։



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

---

*վանդի պես էր զգում։ Հետո՝ պատասխանեց այն, ինչին ինքը սպասում էր. մայրը՝ լուռ մտավ, կոճակների տոպրակը դրեց սեղանին։ Զսպված բարկությունից նրա երեսը կարմրել էր։ Մեսրոպը պառկած էր անկողնում և վախով նայում էր նրան։ Իրենք մենակ էին տանը։ Ինքն այնքան ասելիք ուներ մայրիկին, հասկանում էր, որ պետք է անի միայն այն, ինչ ասում են մեծերը, եթե ուզում էր, որ իրեն սիրեն ու չանհանգստացնեն։ Բայց նաև ուզում էր անել արտասովոր բաներ, ոչ անպայման ճիշտ ու ճիշտ ուրիշների նման, ոչ միայն այն, ինչ թույլատրվում է փոքրերին։ Նա գիտեր, որ չի կարողանա բացատրել այնպես, որ մայրը հասկանա, և կարկամած սպասում էր։*

*— Դեղը խմե՞լ ես,— հանգիստ հարցրեց մայրը։*

*Մեսրոպը գլխով արեց։ Նա իրեն անչափ թեթևացած էր զգում, որ մայրը բացատրություն չըպահանջեց։*

*— Մա՜...*

*— Ի՞նչ է։*

*— Ես քեզ սիրում եմ,— ասաց և աչքերը լըցվեցին։*

# Ո՞ՒՄ ՏՆԱԿՆ ԷՐ ԱՄԵՆԻՑ ԼԱՎԸ

ՄԱՐԱ ՄԵՀՐԱԲՅԱՆ

Նկ. ԱՇՈՏ ՄԵԼՔՈՆՅԱՆԻ

Թզենուց մի տերև պոկվեց և օրորվելով ընկավ ուղիղ ծառի տակ դրված սեղանին, որի շուրջը քիչ առաջ նստած էին երեխաները։

Հետաքրքրասեր տերևը նայում էր սեղանին թողած երեխաների նկարները։ Հանկարծ մեկը ձայն տվեց նրան.

— Սիրու՜ն, սիրու՜ն տերևիկ,
Կանա՜չ, կանա՜չ տերևիկ,
Տունը ծածկել ես, տունը պահել ես,
Խեղճ նապաստակը ինչպե՞ս ներս մտնի,
Հիմա աղվեսը նրան կբռնի։

Տերևը զարմացած նայեց շուրջը. նապաստակն էր, Արամիկի նկարած շեկլիկ նապաստակը, որ փախչում էր աղվեսից։ Տերևը խղճաց նրան և իսկույն ետ քաշվեց.

— Մի լար, շեկլիկ նապաստակ,
Մի լար, փոքրիկ նապաստակ.
Ահա հարմար մի տնակ,
Որ Համլիկն է նկարել,
Դուռ-լուսամուտ լավ ներկել։

Նապաստակը շատ ուրախացավ։ Նա թափահարեց ականջներն ու մոտեցավ Համլիկի նկարած տնակին։ Ուզեց ներս մտնել, բայց... աչքն ընկավ կարմիր գույնով ներկած տանիքին ու ... կանգ առավ.

— Տանիքը, տե՛ս, ներկված չի,
Անձրևներից կկաթի,
Նապաստակին կթրջի։

Նայեց տերևը կեսը ներկված տանիքին ու գլուխն օրորեց.

— Մոռացել է Համլիկը,
Լավ չի ներկել տանիքը,
Նա միշտ իր շուրջն էր նայում,
Եվ խոսում. և նկարում։

— Ոչինչ, նապաստակ, այստեղ ուրիշ տնակներ էլ կան, ընտրիր դրանցից մեկը։ Ա՛յ, թեկուզ այս մեկը. տե՛ս, թե Հովիկն ինչ լավ տնակ է նկարե՜լ. բակում էլ գազարի և կաղամբի մարգեր կան։

Կաղամբի ու գազարի անունը լսելիս նապաստակի աչքերը փայլեցին։ Ուրախությունից նա գլուխկոնծի տվեց, հետո ետ գցեց երեսին ընկած ականջները, պոչիկը թափ արվեց, ուզեց ներս մտնել, բայց դռան մոտից ետ դարձավ ու նստեց տնակի կողքին նկարած աթոռին ու լաց եղավ.

— Դռնակ չունի տնակը,
Ես որտեղի՞ց ներս մտնեմ.
Լուսամուտից վայր կընկնեմ,
Թաթիկներս կկոտրեմ։

Տերևը հառաչեց.

— Հովիկն էլ էր շտապում,
Հովիկն էլ էր միշտ խաղում,
Նա իր նկարը թողած՝
Արամիկին էր նայում։

— Գուցե Ծովինարի նկարած տնա՞կը կմտնես, նա բոլորից ուշ գնաց խաղալու, իսկ նկարելիս ոչ ոքի հետ չէր խոսում,

Նապաստակը նայեց անտառի կողմը...
Ծառի հետևից երևում էր աղվեսը։



Նա տեղից վեր թռավ ու մոտեցավ տնակին.

— Ջա՜ն, ինչ լավն է տնակը,
Ջա՜ն, ամուր է դռնակը,
Ծխնելույզն էլ է կարգին,
Ներկ է քսած տանիքին։
Աղվեսներից չեմ վախում,
Հանգիստ կապրեմ տնակում։

Հետո նա ականջի ծայրով սրբեց աչքերը, ներս մտավ ու դուռը ներսից փակեց։

Հենց այդ ժամանակ անտառից դուրս եկավ աղվեսը. նա զայրացած պտտվեց տնակի շուրջը, թաթով դուռը հրեց և բարկացած կրճտացրեց ատամները։

— Ուշացա՜ր... — ասաց տերևը, թռավ քամու թևին ու գնաց աշխարհ տեսնելու...

# ԱՐՔԱՅԱԴՈՒՍՏՐԸ ԱՊԱԿՅԱ ԲԼՐԻ ՎՐԱ

(Անգլիական հեքիաթ)

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Կար չկար, մի մարդ կար։ Նա ուներ երեք որդի։ Ավագ որդու անունը Ջո էր. նա ամենաուժեղըն էր։ Միջնակ որդու անունը Ջիմ էր. նա ամենահիմաստունն էր։ Կրտսեր որդու անունն էլ Ջեկ էր։ Բոլորը կարծում էին, թե նա ամենահիմարն է, և տան ամենադժվար գործերը միշտ նրան էին հանձնարարում։

Ջեկի հայրը մի քիչ հող ուներ, որտեղ ցորեն էր ցանում։ Ցորենը լավ էր անում։ Ջեկի հայրը իր հողից կարող էր շատ ցորեն ստանալ ու շատ հարստանալ, բայց միշտ մնում էր աղքատ, որովհետև ամեն տարի ինչ-որ մեկը գիշերով գալիս և ուտում էր ամբողջ ցորենը։

Մի օր հայրը ավագ որդուն՝ Ջոյին ասում է.

— Գնա և գիշերը հսկիր, որպեսզի տեսնես թե ով է ուտում մեր ցորենը։

Երբ մթնում է, ավագ որդին գնում մտնում է մի փոքրիկ մառան, որտեղից նա կարող էր դիտել։ Բայց շուտով Ջոն քնում է ու, առավոտյան, երբ արթնանում է, տեսնում է հացահատիկը չկա։

— Գիշերով ո՞վ կերավ ցորենը, — հարցնում է հայրը։

— Չգիտեմ, — պատասխանում է մեծ որդին։

— Բայց ես ասացի քեզ, որ հսկես, — ասում է հայրը։

— Ես սկզբում հսկում էի, — ասում է Ջոն, — բայց հետո քնեցի և ոչինչ չտեսա ու չլսեցի։

Եվ այսպես հայրն ու երեք որդիները ամբողջ տարին մնացին առանց հացի։

Հաջորդ տարին հայրը կանչում է միջնակ որդուն՝ Ջիմին, և ասում.

— Գնա և գիշերը հսկիր, որպեսզի տեսնես, թե ով է ուտում մեր ցորենը։

Երբ մթնում է, միջնակ որդին գնում է մառանը։ Բայց շուտով նա քնում է, և առավոտյան երբ արթնանում է, տեսնում է հացահատիկը չկա։

— Գիշերով ո՞վ կերավ մեր ցորենը, — հարցնում է հայրը։

— Չգիտեմ, — պատասխանում է միջնակ որդին։

— Բայց չէ՞ որ ես քեզ ուղարկեցի հսկելու, — ասում է հայրը։

— Ես սկզբում հսկում էի, — ասում է Ջիմը



բայց հետո քնեցի և ոչինչ չտեսա ու չլսեցի։

Եվ այսպես, հայրը և երեք որդիները մի ամբողջ տարի էլ մնացին առանց հացի։

Մյուս տարին հայրը կանչում է կրտսեր որդուն՝ Ջեկին, և ասում.

— Գնա և գիշերը հսկիր, որպեսզի տեսնես, թե ով է ուտում մեր ցորենը։

Երբ մթնում է, կրտսեր որդին գնում է մառանը։ Նա իր հետ վերցնում է մի գիրք, նստում մի անկյունում, սկսում է կարդալ և չի քնում։ Նա դուրս է գալիս մառանից ու տեսնում է հացահատիկը դեռ այնտեղ է և մոտակայքում ոչ ոք չկա։ Նա կրկին վերադառնում է իր անկյունը, գիրքը կարդում ու սպասում։ Քիչ անց նա նորից դուրս է գալիս ու նայում շուրջը, բայց դարձյալ շրջակայքում ոչ ոքի չի նկատում և հացահատիկը տեղում է լինում։ Ջեկը նորից վերադառնում է իր անկյունը, կարդում է իր գիրքը ու սպասում։

Հենց որ ժամացույցը խփում է 12-ը, մի ուժեղ աղմուկ է բարձրանում և պատերն ու հատակը դղրդում են։ Ջեկը կրկին մառանից դուրս է գալիս ու դիտում դաշտը։ Հանկարծ նա տեսնում է մի ձի, որը դաշտը կտրելով սրընթաց արշավում է դեպի հացահատիկը։

— Հա՛, ուրեմն այդ դո՛ւ ես ամեն տարի ուտում հորս ցորենը, — գոռում է Ջեկը ու վազում դեպի ձին։

Նա հասնում է ձիուն, հանում ոսկյա սանձը, իսկ ձին սլանում է հեռու։ Ջեկը վերցնում է ոսկյա սանձը ու գնում մառանի անկյունը քնելու։

Առավոտյան հայրը և ավագ որդիները գնում են տեսնելու հացահատիկը։ Երբ տեսնում են, որ հացահատիկը տեղումն է, նրանք կանչում են Ջեկին և հարցուփորձ անում, բայց նա ոչինչ չի ուզում պատմել։

Շուտով այդ երկրի թագավորն ասում է.

— Իմ դուստրը պետք է ամուսնանա։ Ես նրան կտամ այն մարդուն, որը ձիով կբարձրանա ապակյա բլրի գագաթը, որտեղ գտնվում է արքայադուստրը, և կբերի նրանից երեք ոսկյա խնձորները։

Եվ ահա մի օր արքայադուստրը վերցնում է երեք ոսկյա խնձորներն ու նստում ապակյա բլրի գագաթին։ Երկրի բոլոր տղամարդիկ ուզում են փորձել իրենց շնորհքը, բայց նրանց ձիերը ապակու վրա սայթաքում են ու չեն կարողանում տեղ հասնել։

Ջեկի երկու եղբայրները նույնպես գնում են իրենց բախտը փորձելու, բայց նրանց ձիերն էլ են սայթաքում ու նրանք ամոթով տուն են վերադառնում։

Ջեկը ոսկյա սանձը խփում է գետնին։ Հանկարծ ուժեղ աղմուկ է բարձրանում ու երկիրը դղրդում է։ Հրաշք ձին հեռուներից սրընթաց գալիս կանգնում է ուղիղ Ջեկի մոտ։ Ջեկը ոսկյա



սանձը հագցնում է ձիուն, նստում ու քշում դեպի բլրի գագաթը։ Նա վերցնում է երեք ոսկյա խնձորները ու աննկատ հեռանում։

Հաջորդ օրը թագավորն իր ծառաներին ուղարկում է գտնելու այն մարդուն, որը վերցրել էր երեք ոսկյա խնձորները։ Նրանք ամեն տեղ փնտրում են, բայց ոչ մի տեղ չեն գտնում։ Վերջապես նրանք գալիս են Ջեկի հոր մոտ ու ասում՝

— Միգուցե դու կամ քո որդիներից մեկն է վերցրել երեք ոսկյա խնձորները։

— Ոչ, — ասում են հայրը և երկու ավագ որդիները։

— Մի՞թե էլ մարդ չմնաց հարցնելու, — ասում են ծառաները։

— Միայն Ջեկն է մնացել՝ փոքր որդիս, — ասում է հայրը, — բայց նա այնքան հիմարն է, որ երբեք չի կարող հասնել երեք ոսկյա խնձորներին։

— Մենք պետք է տեսնենք նրան, — ասում են ծառաները։

Նրանք մարդ են ուղարկում կանչելու Ջեկին և, երբ Ջեկը գալիս է, նրա ձեռքին տեսնում են ոսկյա խնձորները։

— Ահա՛ մեր արքայադստեր ապագա ամուսինը, — գոչում են թագավորի ծառաները։

— Այժմ դու մեզ հետ պետք է գաս թագավորի պալատը։

Եվ այսպես Ջեկը թագավորի ծառաների հետ գնում է պալատ։ Շուտով լսվում է զանգերի ղողանջը, սկսվում է թագավորի աղջկա ու Ջեկի հարսանիքը։

Անգլերենից թարգմանեց ԼԻԴԱ ԱՆԱՆՅԱՆԸ



# ՎԱՐՊԵՏԻ ՏՈՒՆԸ

ԱԼ. ՇԱՀԱԶԻԶՅԱՆ



Վարպետի աշխ

Նրան ճանաչում էին բոլորը: Դուրս էր գալիս տանից, հաճախ հովանոցը ձեռնափայտի տեղ բռնած, քայլում էր դանդաղ, փոքր ինչ առաջ թեքված, ծանր ու խոհուն, ասես մի աշխարհ էր տանում իր հետ: Բարձրահասակ չէր, բայց պարթև էր ու վեհցիկ: Լայն ճակատ ուներ, աղեղնաձև հոնքեր, բարությամբ ժպտացող նշաձև աչքեր... Հայկական արծվենի քթի տակ կարճ բեղ էր պահում, կարճ մորուք, և միշտ մի անուշ ժպիտ լուսավորում էր նրա դեմքը, որը մի անգամ տեսնողը այլևս երբեք չէր մոռանա:

Չնայած իր պատկառելի տարիքին, նա ոտքով էր շրջում քաղաքում: Գնում էր գրողների տուն, Գերագույն սովետ, գիտությունների ակադեմիա: Գնում էր Մատենադարան, հրատարակչությունները, պետական գրադարան... Գնում էր բարեկամներին այցելության և կամ պարզապես շրջում էր մեր վարդագեղ մայրաքաղաքում՝ սքանչանալով նրա տուֆակերտ նորակառույցներով, ուրախանալով նրա շինարարության մեծ թափով:

Նա սովետահայ գրողների միության վարչության անփոփոխ նախագահն էր, Գերագույն սովետի դեպուտատ, ակադեմիայի անդամ՝ ակադեմիկոս: Նա մեծ բանաստեղծ էր ու գրող, մեծ հայրենասեր, հումանիստ ու քաղաքացի...

Ու երբ դուրս էր գալիս տանից, ասես խնդությամբ էր լցվում փողոցը:

— Իսահակյա՛նը, Վարպե՛տը,— շշնջում էին մարդիկ իրար ու շտապում հարմար դիրք գրավել, որքան թույլ էր տալիս պատշաճությունը, նրան մոտիկից տեսնելու համար:

Ծանոթ-բարեկամները խոնարհաբար ու ակնածանքով գլխարկ էին բարձրացնում, ավելի մտերիմները սեղմում ձեռքը, հարցնում առողջությունը և, եթե դա հաճելի էր վարպետին, նրանցից մեկ-երկուսը ընկերակցում էին նրան: Որքա՛ն է պատահել, որ վտանգավոր խաչմերուկներում, վարպետին մենակ տեսնելով, օգնության են շտապել երեխաները կամ տարեց մարդիկ: Իսահակյանին չճանաչել չէր կարելի: Նրա անզուգական բանաստեղծությունները, նրա սքանչելի պատմվածքները, պոեմներն ու բալլադները, նրա խոհական ու իմաստուն դիմագծերը դրոշմված են մարդկանց սրտերում և հիշողության մեջ:

Այդ պահերին, երբ անցնում էր նա, խմբվում էին մարդիկ մայթերին և խանդաղատալից



Ավետիք Իսահակյանի տուն-թանգարանի մշտական այցելուներն են դպրոցականները



...ասենյակը

փաղաքշանքով. երկար ժամանակ. աչքերով ուղեկցում. մինչև որ իր վեհաշուք ու մտորուն քայլերով կհեռանար. կծածկվեր տեսողությունից: Պատահում էր. որ արագ ընթացքի ժամանակ. վարորդները նկատելով մեծ բանաստեղծին փողոցով անցնելիս. դանդաղեցնում էին մեքենայի կամ արամվայի ընթացքը:

Վարպետը երբ երևում էր հասարակական վայրերում՝ առնախմբությունների հանդիսավոր ժողովների կամ նիստերի ժամանակ. հանդիսականները գորովանքով ու սիրով ունկնդրում էին նրա իմաստուն ու հայրենաշունչ խոսքը. որի ամեն մի բառը թափանցում էր մարդու հոգու խորքը. մնում հիշողության մեջ: Մեծ բանաստեղծի խոսքը խորհուրդ ու պատգամ էր իր ժամանակակիցներին ու հետնորդներին: Նա խոսում էր կարճ, ընդհատումներով. փոքր ինչ կակազող. կրծքային թավ ձայնով...

Նա չկա այլևս: Ութերորդ տարին է ահա բոլորում. ինչ դադարել է բաբախելուց նրա մեծ սիրտը: Նրանից հետո ծնված սերունդը. մեր այսօրվա պիոներները. այլևս չեն կարող շըրջապատել նրան. լսել նրա խոսքերն ու խորհուրդը. հետը լուսանկարվել և ընտրել իրենց ջոկատի պատվավոր պիոներ... Գնաց նա մեզանից առհավետ. բայց նրա ողջ ստեղծագործությունը. նրա թանկագին ձեռագրերը. գրադարանը. աշխատասենյակը, հյուրասենյակը. ննջարանը. պարտեզը. ողջ տունը, ուր իր կյանքի վերջին տասնամյակը անց է կացրել հանճարեղ բանաստեղծն ու մեծ քաղաքացին. որպես անգնահատելի հարստություն ժառանգություն մնաց ժողովրդին՝ հավիտյան պահպանելու համար: Կառավարության որոշմամբ. այդ սև տուֆակերտ առանձնատունը. որ պետությունըն էր կառուցել ու նվիրել նրան. այսօր դարձել է տուն-թանգարան:

Մեծ բանաստեղծի ապրած օրերի շունչն առնելու. նրա նվիրական ձայնը լսելու համար. եկեք. թանկագին բարեկամներ, միանանք աշխարհի ծայրերից ժամանած զբոսաշրջիկների խմբերից մեկին. որ ուխտավորի պես եկել են աշխարհահռչակ բանաստեղծի տունը տեսնելու և անձամբ մասնակցելու իրենց խորը հարգանքն ու երախտագիտությունը:



Ավետիք Իսահակյանը և Սիամանթոն

Օպերայի մոտ մեքենաներից իջնելով. զբոսաշրջիկների խումբը Բարեկամության մայրուղով բարձրանում է վեր ու. շատ չանցած. թեքվում դեպի աջ: Հայկական ոճով. պարզ ու վեհաշուք կանգնած է սրբատաշ սև տուֆով կառուցված առանձնատունը: Պլեխանովի փողոց. № 32:

Եվ ահա մենք գտնվում ենք առաջին սրահում: Այստեղ ցուցադրված նյութերը պատմում են բանաստեղծի մանկության. պատանեկության. ուսումնառության առաջին տարիների և արտասահման կատարած առաջին ուղևորության մասին:

Պատմական Շիրակի հարթավայր... Հեռու մշուշում Անին է. հայոց հնադարյան կործանված մայրաքաղաքը. որն ստեղծագործության նյութ է եղել Իսահակյանի համար: Մի այլ կտավի վրա պատկերված է նախահեղափոխական տարիների. արհեստավորների քաղաք Ալեքսանդրապոլը՝ իր հողածածկ. հարթ կտուրներ ունեցող տներով: Դրանցից մեկում. որի մակետը դրված է ապակե ծածկի տակ. ծնվել է ապագա մեծ բանաստեղծը: Պատին նրա ծնողների՝ Սահակի ու Ալմաստի լուսանկարներն են. որոնց նկատմամբ այնքան գորովագին սեր է տածել Իսահակյանը:

Թերևս ոչ մի բանաստեղծ այնպիսի ուժով չի պատկերել մորը. երգել մոր սերը. ինչպես Իսահակյանը:

Հարազատների նկարների մեջ է ուշագրավ մի լուսանկար: Նաշի գոտին հնատարազ շորի՝ արխալուղի վրա պինդ կապած. գլխաբաց կանգնել է փոքրիկ Ավետիքը իր սրածայր. հսկա փափախը գլխին. պապի կողքին. որը մի ձեռքով գրկել է իր սիրելի թոռնիկի ուսը: Գեղարվես-

տական յուղանկարներից մեկը պատկերում է պատանի Ավետիքին Արփաչայի ափին՝ Պ. Պռոշյանի հայտնի «Սոս և Վարդիթեր» վեպը ընթերցելիս:

Հարազատ Արփաչայը, Ղազարապատ գյուղը, ուր անցել է պոետի մանկությունը, Անին, Շիրակը եղել են մեծ բանաստեղծի մշտական սերը, կարոտը ու ներշնչանքի աղբյուրը:

«Սիրելագույն Շիրակն ինձ համար տիեզերքի կենտրոն է եղել, որովհետև այստեղ է սկսել բաբախել իմ սիրտը: Այստեղ եմ զգացել Աշխարհը: Այս կենտրոնում է սկիզբ առել իմ աշխարհաճանաչումը: Այստեղ եմ լսել և սովորել մեր հոյակապ մայրենի լեզուն»:

Ահա և Հառիճի վանքը, որի երկդասյան դպրոցում սովորել է Իսահակյանը: Այս բաժնում ներկայացված են պատանի բանաստեղծի առաջին գրական փորձերի ինքնագրերի պատճենները, և վերջապես, նրա «Ծաղիկ էի նորաբողբոջ» բանաստեղծությունը, որ կարդում է ճեմարանի ուսուցիչ Հով. Հովհաննիսյանին և լսում նրա գովասանքի խոսքը:

— Դու բանաստեղծ ես,— ասում է նրան ուսուցիչը:

Իսկ բանաստեղծը պետք է շատ գիտելիքներ ունենա: Այդ նպատակով Իսահակյանը ուղևորվում է արտասահման՝ կրթությունը Լայպցիգի համալսարանում շարունակելու համար: Այդ մասին է պատմում արտասահմանյան առաջին ուղևորության լուսավորված քարտեզը:

1895—1900 թվականներ: Ցարական կառավարության դեմ գրած իր ազատատենչ բանաստեղծությունների և ելույթների համար 1896 թ. Իսահակյանը ձերբակալվում է Երևանում, մեկ տարի բանտ նստում: Հաջորդ տարվա՝ 1898 թ. հունվարին հրատարակվում է նրա բանաստեղծությունների առաջին գիրքը: «Երգեր ու վերքեր», այդպես է կոչվում ցուցափեղկում դրված փոքրիկ այս գրքույկը, որ մեծ հռչակ բերեց նրա հեղինակին: Նրա բանաստեղծությունները երգի պես ամոքում էին մարդկանց հոգիները, վերքի պես ցավեցնում: Նա իր անձնական վշտի միջոցով արտահայտում էր նաև իր նման հազարավոր երիտասարդների կարոտը, սերը և աշխարհի ուրախություններից զրկված լինելու դառնությունը:

*Խեղճ սրտերը դառը դատի,*
*Դատարկ նստի... է՜յ, աշխարհ,*
*Էլ ինչու՞ ես քարը թողնում*
*Քարի վրա, քա՛ր աշխարհ:*

Բանաստեղծի անդրանիկ գիրքը բարձր գնահատեց Ստեփան Շահումյանը: Ահա Ռիգայից Իսահակյանին այդ առթիվ նվեր ուղարկած ռուս հեղափոխական մի բանաստեղծի գիրքը՝ հետևյալ ընծայագրով. «Տիեզերքի պերճ հյուսվածքը»-ին. 1899 թ. Ռիգա. Ստ. Շահումյանից»:

Ցարական կառավարությունը Իսահակյանին աքսորեց Օդեսա:


...Аветик Исаакян так близко подошел к складу народной лирики, что иные стихотворения кажутся созданиями безымянных певцов, новой серией народных песен...

По этим стихам можно судить, какого большого мастера имеет армянская литература в лице Аветика Исаакяна.

В. Брюсов

Սիրելի գրողին շատ բարձր է գնահատել նաև հայ ժողովրդի բարեկամ Վ. Բրյուսովը

Բայց նա, որտեղ էլ որ լիներ, իր մեծ սրտի մեջ տանում էր փոքր հայրենիքը՝ իր անտակ ու խոր վշտերով: Ցուցափեղկում դրված են նրա սքանչելի «Սև-մութ ամպեր», «Ա՜խ, մեր սիրտը լիքը դարդ, ցավ» և այլ բանաստեղծությունների ինքնագրերը: Մշտավառ սեր դեպի իր հայրենիքը, խորը կարեկցանք իր տառապած ժողովրդի նկատմամբ: Ահա այս մասին են պատմում երկրորդ սրահում ցուցադրված հարուստ նյութերը:

Այսպես անցնում ենք սրահից-սրահ, և ահա մեզ հրավիրում են վարպետի աշխատասենյակը:

Տեսարանը հուզիչ է ու ցնցող: Ահա այն գրասեղանը, որի վրա շատ չնաշխարհիկ երգեր են ծնվել: Բացված գրքի վրա մնացել են ակնոցը և խոշորացույցը: Սեղանի վրա էլի գրքեր կան, որ պիտի աչքի անցկացներ Վարպետը, ու չհասցրեց: Ահա պատերի երկայնքով շարված լիքը գրապահարանները, ահա գահավորակը, ուր հոգնելիս պառկում հանգստանում էր Իսահակյանը: Ահա նրա գրիչները, ծխատուփը՝ լուցկին վրան... Անկողինը հավաքած է: Հողաթափերը՝ գորգի վրա: Փոքրիկ սեղանին գիշերային լամպն է, նաև գրքեր՝ գիշերը կարդալու համար:

Իր թափառ ու երկար կյանքում շատ երկինքների տակ է ապրել մեծ բանաստեղծը, շատ ծովեր ու ցամաքներ անցել: Նստել ու վեր է կացել շատ գիտունների ու երևելի մարդկանց հետ, սովորել է լեզուներ, ուսել մեծահամբավ համալսարաններում, մագաղաթներ թերթել, հին ու նոր հազարավոր գրքեր կարդացել, աշխարհե-աշխարհ թափառելով խորհել ու մտահոգվել մարդու ճակատագրի համար: Նա իր ստեղծագործություններում երգել է սեր, աշխատանք, ժողովուրդների բարեկամություն և երջանկություն կամեցել մարդկությանը: Նրա ստեղծագործությունները վաղուց դուրս են եկել մեր հայրենիքի սահմաններից: Իրենց մայրենի լեզվով կարդում են նրան հնդիկը, չինացին, լեհը, բուլղարը, գերմանացին, ֆրանսիացին, կիրգիզը, թաթարը... Նա մի կենդանի հանրագիտարան էր, իմաստուն փիլիսոփա, մեծ մտածող ու մեծ մարդասեր: Նա մեր ժողովրդի պատմությունն էր, նրա խիղճը և հպարտությունը: Նա եկավ դարերի խորքից ու գնաց դեպի դարերը: Նա իր անմահ ստեղծագործություններով ապրում է և կապրի ընդմիշտ, քանի կա Մանթաշը, Շիրակը և կայծակեղեն թևերի ալմաստ վահան Արագածը: Հայ գրականության Արագածն է նա, և ոչ մի սենյակում չես տեղավորի:

Իմ փոքրիկ բարեկամներ, կարդալով նրա թովիչ երգերն ու պատմվածքները՝ մի՛ մոռացեք մեծ իմաստունի պատգամը՝ սիրել մայրենի լեզուն, լինել ազնիվ ու շիտակ մարդ, սիրել հայրենիքը և օգտակար լինել նրան:

*Լուսանկարները՝ Զ. ԲՈՏԻԿՅԱՆԻ*

# ԱՇՆԱՆ ԲԱՐԻՔԸ

ՀՈՎԻՍ ԱՂԵՐ

Քայլում է աշունը՝
Դեղին շոր հագած,
Քաղցր ու համեղ
Մրգեր շալակած:
Ծանր է բեռը,
Դժվար է քայլում,
Վարսերին նստած
Եղյամն է փայլում:
Ու ձայն է տալիս
Մանուկներին ժիր.
— Եկեք օգնեցե՛ք,
Ձեզ միրգ տամ ընտիր:
Օգնեցեք, բեռս
Տանենք ամբարենք,
Որ ձմռան ցրտին
Մենք անհոգ ապրենք:
— Չէ, ես չեմ օգնի,—
Ասաց Գիժ Համոն,
Որ թրև գալով
Ծամում էր ծամոն:
— Ես քեզ միրգ չեմ տա,
Այ դու ծույլ, անբան,—
Նախատեց հոր պես
Աշունը նրան:—
Ով որ ինձ օգնի,
Բեռս տուն տանի,
Թող իմ մրգերը
Նա անուշ անի:

# ՓՈՔՐԻԿ ՉԱՐԱՃՃԻՆ

*Մեր բակը մեծ է: Երեխաները էլ շատ են: Հաճախ նրանք հավաքվում են բակի ստվերոտ անկյունում, նստում ծառի տակ դրված երկար նստարանին և ուրախ զրուցում, պատմում են հետաքրքիր հեքիաթներ, զվարճալի պատմություններ, հետո խաղում են, երգում:*

*Իսկ Շուշանիկը, որ մազերին միշտ վարդի նման բացված ժապավեններ է կապում, ամեն անգամ, երբ հավաքվում են, թեթև շիկնում է և հուզված պատմում իրենց մանկապարտեզի մասին.*

*— Մեր մանկապարտեզում այնքան լավ է, այնտեղ այնպես մաքուր է, գեղեցիկ: Ամեն օր առավոտյան մարմնամարզական վարժություններ ենք կատարում, պլաստիլինից արջեր, գայլեր ու ծաղիկներ ենք ծեփում:*

*Բոլորը նրան լսում են, հարցեր տալիս, ուրախանում, իսկ Համասիկը...*

*Ավելի լավ է նրա մասին մի քիչ երկար պատմեմ: Համասիկը Շուշանիկի փոքր եղբայրն է, բակի ամենաչարը: Նա չէր ուզում մանկապարտեզ գնալ, երկու մանկապարտեզից էլ փախել էր: Առավոտները, երբ հայրիկն ու մայրիկը գնում էին աշխատանքի, իսկ Շուշանիկը՝ մանկապարտեզ, Համասիկը տանը մնում էր մենակ՝ տատիկի հետ, սկսում էր քրքրել Շուշանիկի խաղալիքները, խըզբըզում ալբոմները և տատիկին բարկացնում:*

*— Ա՛յ բալա, ախր որ մանկապարտեզ գնաս, մենակ չես մնա, երեխաների հետ կխաղաս, ավելի խելոք կլինես,— խրատում էր տատը:*

*— Չե՛մ ուզում, մանկապարտեզ չե՛մ գնա, այնտեղ կռիվ-կռիվ չեն խաղում,— ասում էր Համասիկը և դուրս գալով բակ, խառնվում էր փոքր երեխաներին:*

*Բակի շատ տատիկներ նրա*



մասին դժգոհությամբ էին խոսում, «կրակի կտոր է» ասում էին:

Հենց այդ կրակի կտորն էլ չէր սիրում, երբ Շուշանիկը երեխաներին ոգևորված պատմում էր մանկապարտեզի մասին:

Այդ օրն էլ Շուշանիկը արտակարգ ուրախ վերադարձավ մանկապարտեզից և շտապեց Համասիկին տեղեկացնել օրվա նորությունների մասին.

— Լսիր, Համասիկ, այսօր այն՛քան հետաքրքիր խաղ ենք սովորել՝ «Արջն ու երեխաները»: Գիտե՞ս ինչպես են խաղում. դաշնամուրի վրա նվագում են որևէ երաժշտություն, երեխաները քայլում են, հանկարծ հայտնվում է արջը, երաժշտությունը դադարում է, և բոլորը վախեցած փախչում են, իսկ արջը աշխատում է բռնել նրանց:

Համասիկը սկզբում չէր լսում Շուշանիկին, բայց հենց որ լսեց արջի անունը, իսկույն հետաքրքրվեց.

— Արջ, իսկ ո՞վ էր արջը:

— Սուրիկը, Վարդանը, Կարինեն, իսկ ամենալավ արջը ընկեր Անժելան էր, այնպես վախենում էինք նրանից:

Համասիկը էլ ոչինչ չհարցրեց, բայց, չգիտես ինչու, հանկարծ տխրեց և գնաց պատշգամբ:

Հաջորդ օրը նա դարձյալ մենակ մնաց: Տանը ձանձրանալուց հետո դուրս եկավ բակ, ուզեց իր հասակակիցների հետ խաղալ: Բայց այս ի՞նչ է, բոլորն էլ գնացել էին մանկապարտեզ, իսկ փոքրերի հետ էլ չխաղաց, չէ՞ որ ինքը մեծ է նրանցից, այն էլ՝ երկու տարով:

Այդպես անցնում էին օրերը: Շուշանիկն ու բակի մյուս երեխաները ճաշից հետո ամեն օր պատմում էին մանկապարտեզի նորությունների մասին, իսկ չարաճճի Համասիկը սկսել էր ձանձրանալ, մենակություն զգալ: Մի օր էլ, չնայած ուսումնական տարին վաղուց էր սկսվել մանկապարտեզներում, Համասիկի մայրը նրան տարավ Շուշանիկենց մանկապարտեզը: Դաստիարակչուհիները սկզբում հրաժարվեցին Համասիկին իրենց խմբում վերցնել, իսկ հետո ավագ խմբի դաստիարակչուհի Մուրադյան Անժելան համաձայնեց:

Առաջին օրերին Համասիկը չէր լսում դաստիարակչուհուն, խանգարում էր հանգստի ժամը, ծեծում աղջիկներին:

— Համասիկ, եթե այդպես չար մնաս, բոլորը քեզ վրա կծիծաղեն, քեզ պլաստիլին չենք տա, խաղի ժամանակ էլ արջուկ չես լինի, —հարազատ մոր նման համոզում էր ընկեր Անժելան: Մի քանի անգամ էլ նա գնաց Համասիկենց տուն, ծնողների հետ խորհրդակցեց, իսկ պարապմունքների ժամանակ ընկեր Անժելան Համասիկին միշտ ուշադրության կենտրոնում էր պահում, խրախուսում էր.

— Ա՛յ, ի՛նչ խելոք է այսօր Համասիկը, լավ է աշխատում:

Մի անգամ էլ, երբ առավոտյան բոլորը հավաքվեցին, մարմնամարզական վարժություններից հետո ընկեր Անժելան ասաց.

— Այսօր հերթապահելու է Համասիկը:

— Չեմ ուզում, չեմ անի, — հրաժարվեց փոքրիկ չարաճճին և քաշվեց մի անկյուն:

Ընկեր Անժելան չպատասխանեց: Հետո երեխաներին նա տարավ զբոսանքի: Համասիկը խաղասենյակում մնաց մենակ: Նա նայեց շուրջը. խաղալիքները, աթոռները, սեղանները, ամեն ինչ թափթփված էին և խառնված: «Այս բոլորը ես պիտի դասավորեմ», — մտածեց Համասիկը և բարկանալով՝ դուրս եկավ պատշգամբ: Դրսում ոչ ոք չկար, մյուս խմբերն էլ էին գնացել զբոսանքի, ի՞նչ աներ, ո՞ւմ հետ խոսեր: Հետո նա հիշեց ընկեր Անժելայի ասած խոսքերը. «Եթե քեզ հանձնարարված գործը չկատարես, բոլորը կծիծաղեն քեզ վրա և կծաղրեն քեզ»: Համասիկը վախեցավ դրանից, նորից ներս եկավ և սկսեց մտածել. «Հիմա ես բոլորը, բոլորը կհավաքեմ, կդասավորեմ և ոչ ոք չի ծիծաղի վրաս, իսկ ընկեր Անժելան էլ գոհ կմնա», — որոշեց Համասիկն ու գործի անցավ: Բոլորը դասավորեց, նախաճաշի համար գդալներն էլ բաժանեց, ուղիղ երեսուն հատ, և գնաց լվացվելու: Բայց դեռ չէր վերջացրել, երբ զույգերով ուրախ-ուրախ ներս մտան երեխաները և անհամբեր սկսեցին պատմել.

— Համասիկ, այնպես լա՛վ էր դրսում...

— Գնացինք մոտակա բացատը, գնդակ խաղացինք, հետո էլ՝ թաշկինակ:

Իսկ ընկեր Անժելան անմիջապես նկատեց սենյակի մաքրությունը, գրկեց Համասիկին և ուրախ ասաց.

— Ա՛յ, ապրե՛ս. տեսե՛ք, երեխանե՛ր, Համասիկը ինչ լա՜վ է դասավորել սեղանները, ամեն ինչ տեղին է, մաքուր: Դե՛, հիմա պատրաստվեք նախաճաշելու:

Քիչ անց բոլորը լվացվել էին և նստեցին ուտելու:

Նախաճաշից հետո ընկեր Անժելան սովորեցրեց թղթերից նկարներ փակցնելու և նկարելու ալբոմներ պատրաստել: Ճիշտ է, բոլորից լավ աշխատում էին Մարինեն ու Սուսաննան, բայց Համասիկն էլ վատ չէր պատրաստում, կարևորը, որ աշխատանքի ժամանակ խելոք էր, մյուսներին չէր խանգարում: Ու կարծես այդ օրը Համասիկը խելոքացել էր. աղջիկներին չէր հրում, տանն էլ օգնում էր Շուշանիկին՝ կառուցելու կիսատ թողած տունը, լսում էր մայրիկին ու բոլորի հետ սիրալիր խոսում:

Անցնում են օրերը: Բայց Համասիկն արդեն այն «կրակի կտորը» չի, այլ խելոք տղա է դարձել: Նա հիմա այնպես է սիրում ընկեր Անժելային, որ մանկապարտեզից տուն գնալ չի ուզում: Չէ՞ որ այնտեղ շատ լավ է, հետաքրքիր ու ինքն էլ մենակ չի: Հիշում եմ, թե ինչպես էր նա բակի երեխաներին պատմում, որ մանկապարտեզում նշել են Մարինեի, Հեղինեի, Սուսաննայի և իր ծննդյան օրը, բոլորն էլ նվերներ են ստացել, ուրախ երգել ու պարել:



Իսկ մանկապարտեզում Սուրիկը ու Վահանը ինձ պատմեցին, թե ինչքան լավ էր ամռանը, երբ բոլոր դաստիարակչուհիների հետ նրանք էքսկուրսիա գնացին Այղր լիճ: Շոգից ու տոթից հեռացած, գեղեցիկ լճի ափին, փարթամ կանաչի վրա նստած՝ նրանք հանգստանում էին, երգում, պարում, ուրախ աղմկում:

Այսօր ես պատմեցի միայն ավագ խմբի մասին, բայց երեխաների դաստիարակության գործը շատ լավ է կազմակերպում ոչ միայն ավագ խմբի դաստիարակչուհի Անժելա Սուքիասյանը, այլև Խ. Աբովյանի անվան մանկավարժական ինստիտուտի բազայի 167-րդ մանկապարտեզի մյուս խմբերի դաստիարակչուհիները: Նրանք շատ երիտասարդ են, չունեն մանկավարժական երկարամյա փորձ, բայց հարազատ մոր նման կարողանում են գուրգուրել երեխաներին, լեզու գտնել նրանց հետ, համոզել ամենաանկարգներին, այցելել հիվանդներին, ամեն ինչ անել, որ Կարենն ու Արամը, Հովիկն ու Գագիկը, Համասիկն ու Արմինեն խելոք ու կարգապահ երեխաներ լինեն: Ու այս բոլորի համար հարյուրավոր ծնողներ այդ երիտասարդ աղջիկներին ասում են՝ շնորհակալություն:

ԿԱՏՅԱ ՍԱՐԳԱՋՅԱՆ

# ԱՅՍ ԱՆԳԱՄ ԷԼ ՆԱՄԱԿՆԵՐԻ ՄԱՍԻՆ



Գրում է Պլասեբբ

Սիրելի խմբագրություն, ամեն անգամ, երբ «Պիոներ» ամսագրում լույս են տեսնում իմ թղթակցությունները, ես բազմաթիվ նամակներ եմ ստանում, օրական մինչև 50 նամակ: Լավ է, որ դրանք գալիս են խմբագրության հասցեով, թե չէ՝ մեր տան փոստարկղում բոլորին միանգամից տեղ չէր լինի:

Իհարկե, ես անչափ ուրախ եմ, որ այդքան շատ նամակներ եմ ստանում: Դե, ո՞վ չի ուրախանա: Ես այժմ հարյուրավոր նոր ընկերներ ու բարեկամներ ունեմ: Սակայն այդ մասին չէ, որ ուզում եմ գրել: Ավելի կարևոր է պատմել այն տհաճության մասին, որ ես զգում եմ նամակների մեծ մասի ընթերցումից: Այո, այո, մի՛ զարմացեք, իմ հեռավոր բարեկամներից շատերի նամակները գրված են այնպիսի անգրագետ ու ճոռոմ լեզվով, որ ես ամոթից կարմրում եմ:

Հենց առաջին օրը, երբ նամակների կույտը լցրել էի սեղանին և հերթով բաց էի անում, երրորդ նամակը կարդալիս մի այնպիսի ծիծաղ սկսվեց, որ չէի կարողանում շարունակել: Հայրս թե.

— Ի՞նչ պատահեց:

— Հայրիկ, տե՛ս ինչ մազալու նամակ եմ ստացել Հոկտեմբերյանի շրջանից:

Հայրս կարդաց և ծիծաղից թուլացավ: Դե,

ո՞վ չէր ծիծաղի այսպիսի նամակ կարդալիս։

*«Բարևագիր և ծանոթագիր.*

*Բարևագիր բարևներով հարգանքագիր, հարգանքագիր հարգելի սրտով սիրելի պատմով պատմելի կյանքում ոչ մի բույն անմոռանալի ամեն բույն-հիշելի ծովի փրփուր ջրով ոսկե տառերով արծաթե բառերով անթակ հիշատակ ինչպես ծովի հատակ. բարև նամակ բացողին ջանս կարդացող. առողջություն եմ ցանկանում նամակիս պատասխանողին։ Վերցնելով ոսկյա գրիչը թաթախելով երկնային լուծույթի մեջ դանդաղ գրում եմ մի նամակ որի ոսկե տառերը. և օդային ջերմ համբույրներս ընդ. գրում եմ. բարևագիր սրտից էլ չունեմ քաղցր վերնագիր...»* և այլն։ Նամակը վերջանում է այսպիսի մի «ոտանավորով».

*Հիշատակ*
*Նստած էի ծառի տակ*
*Գրում էի հիշատակ*
*Հիշատակը գրելիս*
*Բարուն համերգ էր*
*տալիս.*



2

*Ձեզ գրում վարդ*
*Որ լինի զարդ*
*Այլ գրում եմ հիշատակ.*
*Որ լինի ընդ հիշատակ.*

Մի՞թե 7-րդ դասարանի այս աշակերտը չէր կարող մարդավարի լեզվով գրել իր ասելիքը, առանց ճոռոմաբանելու։ Այստեղ ոչ միտք կա, ոչ տրամաբանություն, էլ չենք ասում տառասխալների և այն մասին, որ նա գաղափար չունի կետադրության կանոններից։ Բայց զարմանալին այն է, որ նա ուսման հարվածային է։

Հայրս մի կուշտ ծիծաղելուց հետո ասաց.

– Ծիծաղում ենք, բայց սա խայտառակություն է. այսպիսի անճոռնի, այլանդակ լեզվով չի կարելի նամակ գրել։ Ես խղճում եմ այս դպրոցականին։ Պետք է օգնել։ Խորհուրդ տուր, որ մյուս անգամ այսպիսի նամակ չգրի։ Ամոթ է, շատ ամոթ։




Հայրս իրավացի էր։ Իհարկե ամոթ է, որ մարդ հասնի 7-րդ դասարան և չկարողանա մի նամակ գրել։ Բայց մի՞թե միայն այդ նամակն էր այդպես գրված։ Արդեն մի քանի հազար նամակ եմ ստացել, դրանց մեծագույն մասը նույն ձևով է գրված, ասես իրարից են արտագրված։ Ես եղա Երևանի մի շարք դպրոցներում և ծանոթացա բազմաթիվ նամակների հետ։ Ամենուրեք նույն տխուր ու ցավալի պատմությունն է։ Ի՞նչ մի լավ բան են գտել այդ նամակ կոչվող անգրագիտությամբ լի բառակույտում, որ արտագրում են իրարից։ Եվ մարդ ինչքա՜ն պետք է հոգեպես աղքատ լինի, որ ուրիշի անկապ մտքերով ուզենա հայտնել իր սրտի խոսքը։

Ես չեմ նշի նամակների հեղինակների անունները, բայց դպրոցները անպայման կնշեմ։ Թող իմ բարեկամներն իմանան, որ իրենց մասին է խոսքը, իմանան ու ամաչեն։ Դպրոցները նշում եմ նաև նրա համար, որպեսզի այդ դպրոցների ուսուցիչները գիտենան, որ իրենց աշակերտները շուտով կավարտեն դպրոցը, բայց ոչ նամակ գրել գիտեն, ոչ էլ տիրապետում են մայրենի լեզվին։

Հոկտեմբերյանի շրջանի Արազափ գյուղից մեկն իր նամակը վերջացնում է «Հիշատակ» կոչվող ոտանավորի մեկ ուրիշ տարբերակով.

*Հիշատակ*
*Ձեռքիս գրում եմ գրիչ*
*Դու կլինես իմ փրկիչը*
*Գրում եմ բառերով*



*Որ մենք ապրենք*
*դարերով*
*Քյանքում եղիր*
*պարզ ու համեստ*
*Բարի գործին ամեքի*
*Դու գրանով չես*
*մնալի*
*Մաքուր պատիվը*
*Քու անձի ։*

Բացի դրանից նկարել է մի ծտանման թռչուն՝ նամակը կտցին, և տակը գրել. *«Նամակ թռի ծտի նման նամակ բացվի վարդի նման նամակ կարդա մարդու նման»։*

Կարդում ես ու դժվարանում հավատալ, որ այս տողերը գրել է 6-րդ դասարանի աշակերտը։ Ազնիվ խոսք, սիրելի խմբագրություն, եթե այսուհետև այդպիսի նամակների հանդիպեմ որևէ դպրոցում կամ ինքս ստանամ, անպայման կգրեմ դրանց հեղինակների նաև անունները ու ազգանունները։

Կալինինոյի շրջանի Շահնազար գյուղից մեկն էլ իր նամակն սկսում է այսպես. *«Միլյուքինյան այգուց վերցնելով մի ճյուղ, վրան ամրացնելով մե-*

*տաղյա ծայր գրում եմ քեզ մի նամակ, որը լի է տառերով ու բառերով, ինչպես ծովն իր անխորտակելի նավերում և հարգում եմ այնքան, որքան աստղ ունի երկինքը»: Նամակն ունի այսպիսի արտառոց վերնագիր «Բարևահամբույրածանոթակարդարագիր»:*

Եթե սկիզբը ճոռոմ ու վերամբարձ է, ապա վերջը անկապ բառերի կույտակում է: Իսկ Գորիսի №1 ութամյա դպրոցից մեկն էլ այսպես է վերջացնում իր նամակը.

*«Եթե լինեմ գերեզմանում վեր կկենամ կտամ քեզի պատասխան Ուտամ քեզի պատասխան»,* վերնագրի սկզբում և վերջում էլ դրված է երեքական բացականչական նշան (այն էլ ոչ հայկական):

Ստեփանակերտի №7 դպրոցից մի աշակերտ իր նամակը «զարդարել» է այսպիսի տողերով և կոչել «Քառյակներ»:

*Ես չեմ գնում սարակեն,*
*Որ մեր սերը սարանա,*
*Ես չեմ գնում վերջակեն,*
*Որ մեր սերը վերջանա*
*Այլ գնում եմ բազմակեն*
*Որ մեր սերը բազմանա:*
*Պահիր թանակ,*
*Գրիր նամակ*
*Թշնամու սիրտը.*
*Կախիր դանակ:*



Աշտարակի շրջանի Բյուրական գյուղի 6-րդ դասարանցի մի աշակերտ *նախքան, մյուս, եթե, դասերդ, դասագիրք, տանից, ֆիզկուլտ* բառերի փոխարեն գրում է *նախկան, միյուս, եթ է, դասերտ, դասխիկրտ, տանձ, ֆիզկուլյտ*: Կես էջանոց այս նամակում 16 տեղ փոքրատառի փոխարեն գրել է մեծատառ և ընդհակառակը: «Աշակերտ» բառի «շ»-ն գրում է մեծատառ, իսկ հատուկ անունները՝ փոքրատառ: Բայց ավելի զարմանալի է, որ հայոց լեզվից ստանում է «չորս»:

Կան նամակներ, որ երբ փորձում ես կարմիր թանաքով ուղղել, ամբողջ էջը կարմրում է:

Անգրագիտություններով, անիմաստ քառյակներով ու ճոռոմ նախադասություններով լի այնքան շատ նամակներ կան, որ բոլորից օրինակ բերել հնարավոր չէ:



Թույլ տվեք ամսագրի միջոցով դիմել իմ հեռավոր բարեկամներին. հրաժարվե՛ք այդ աղավաղված ու աննաշակ նամակներն արտագրելուց, գրեք պարզ ու մարդավարի լեզվով: Եվ հետո՝ աշխատեք տառասխալներ չանել կամ քիչ անել, ճիշտ օգտագործեք կետադրության նշանները: Սպասում եմ գրագետ նամակների: Ահա այդպիսի մի նամակի օրինակ.

*«Բարև, սիրելի Պիասեթ:*

*Ես քո մասին կարդացի «Պիոներ» ամսագրում և որոշեցի ծանոթանալ քեզ հետ: Իմ անունը Հրայր է: Սովորում եմ 7-րդ դասարանում: Գերազանցիկ չեմ, բայց վատ էլ չեմ սովորում. միայն հանրահաշվից եմ «3» ստանում, մյուս գնահատականներս «4» ու «5» են: Այս տարի ինձ ընտրել են ջոկատի խորհրդի նախագահ: Սկզբում շատ էի վախենում, չգիտեի, թե ինչ անեմ: Հիմա այնքան էլ չեմ դժվարանում: Մեր դպրոցում մի լավ նախաձեռնություն ենք սկսել. գրի ենք առնում մեր գյուղի պատմությունը և ուզում ենք թանգարան հիմնել: Ես ու Անահիտը պատրաստում ենք «Մեր գյուղի ամենածեր բնակիչները» բաժինը: Գյուղում կան 6 հոգի, որոնց տարիքը հարյուրից բարձր է: Ամենածերը Աբգար պապն է, որը 114 տարեկան է: Երեկ մենք նրանց տանն էինք: Ես իմ լուսանկարչական ապարատով նկարեցի նրան: Աբգար պապն այնքան հետաքրքիր պատմություններ գիտի, որ ոչ մի գրքում չեմ կարդացել: Եթե*



*գաս մեր գյուղը, ես քեզ անպայման կտանեմ նրա մոտ: Շատ հին-հին գրքեր ունի, բայց ինչքան խնդրեցի՝ մի գիրք չտվեց թանգարանի համար. ասում է՝ կկորցնեք: Հա՛, մոռացա ասել, որ Աբգար պապը անձամբ ճանաչել է վիպասան Րաֆֆուն և նրա մեռնելու ժամանակ ինքը 35 տարեկան է եղել:*

*Սիրելի Պիասեթ, եթե շախմատ խաղալ գիտես, արի նամակով շախմատ խաղանք: Պատասխան նամակում գրիր քո առաջին քայլը:*

*Ընկերական ջերմ բարևներով՝*
*ՀՐԱՅՐ ԹՈՐՈՍՅԱՆ»:*

Տեսնու՞մ եք, Հրայրն իր նամակը գրելու համար ո՛չ միջուրինյան այգուց է նյութ վերցրել, ո՛չ էլ ոսկյա գրիչ: Նամակն այսպես պարզ ու գրագետ պետք է լինի: Բայց Հրայրը կատարել է ուրիշ սխալ, մոռացել և չի գրել իր հասցեն: Բայց ոչինչ, երևի մյուս անգամ կգրի, և մենք կսկսենք շախմատ խաղալ:

Իմ ծանոթ ու անծանոթ ընկերներ, եկեք է՛լ ավելի շատ նամակներ գրենք իրար, բայց գրենք այնպես, որ ոչ ոք չծիծաղի մեզ վրա:

ՊԻԱՍԵԹ

ԶՐՈՒՅՑՆԵՐ ՃԱՐՏԱՐԱ-ՊԵՏՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

1



# ԱՄԵՆԱՀԻՆ ԺԱՄԱՆԱԿՆԵՐՈՒՄ

ԷԴՎԱՐԴ ԱՐԵՎՇԱՏՅԱՆ
*ճարտարապետ*

Մարդն սկսել է կառուցել հազարամյակներ առաջ՝ դեռևս նախնադարյան շրջանում, երբ նա առաջին անգամ հղկեց քարը ու նրանից պատրաստեց առաջին աշխատանքային գործիքը: Բայց դրանից էլ առաջ վայրի մարդուն անհրաժեշտ էր պաշտպանվել տարերքից, թաքնվել գիշատիչներից: Բնության գրկից դեռ չկտրված վայրի մարդու համար թաքստոցներ էին հան-



Քարե փիշապ (Հայաստան)

դիսանում քարանձավները, գետնափորերը և պարզունակ հյուղակները, իսկ անտառային վայրերում՝ ճյուղերից սարքված թաքստոցները ծառերի վրա:

Այդ քարանձավները, գետնափորերն ու հյուղակները հանդիսացան մարդու առաջին տունապատարանները:

Մոտ հիսուն հազար տարի առաջ մարդը առաջին անգամ սարքեց քարե կացինն ու մուրճը: Դա հնագույն քարե դարն էր, որը գիտնականները կոչել են պալեոլիթի դարաշրջան: Իսկ ավելի ուշ, երբ մարդիկ սովորեցին պատրաստել բազմազան գործիքներ հղկված քարերից, գիտնականներն անվանում են նոր քարե դար կամ նեոլիթի դարաշրջան:

Հողագործությունն ու անասնապահությունը մարդուն կապեցին հողի հետ: Մարդիկ հետըզհետե անցան նստակյաց կյանքի և սկսեցին կառուցել մշտական բնակարաններ: Բացվեց նոր էջ շինարարության պատմության մեջ:

Այդ ժամանակ մարդիկ ապրում էին համայնքներով և կառուցում էին մեծ տներ ամբողջ համայնքի համար: Յուրաքանչյուր այդպիսի տան մեջ բնակվում էին տասնյակ մարդիկ: Տունը ներսում բաժանված էր առանձին մասերի, և յուրաքանչյուր մասում կար առանձին օջախ կերակուր պատրաստելու համար: Նրա շուրջն էին հավաքվում ձմեռվա ցուրտ օրերին:

Բնակավայրը պաշտպանելու համար այն շրջափակվում էր ցցաշար գերաններից պատրաստված ցանկապատով:

Բացի բնակարաններից, համայնքի մարդիկ կառուցում էին ահռելի չափսերի հասնող քանդակներ՝ ձկան կերպարանք ունեցող վիշապներ, որոնք պատկերում էին առատության աստծուն, կարծելով, թե նրանցից է կախված բերքի առատությունը և որսի հաջողությունը: Այդ վիշապ-քանդակները մեծ քանակությամբ են հանդիպում Հայաստանի տարբեր վայրերում:



Հնագույն քարե հուշարձան (Անգլիա)

Մարդիկ կանգնեցնում էին նաև հսկայական ուղղաձիգ քարեր՝ մենհիրներ, որոնց քաշը հասնում է մի քանի տոննայի:

Դրանք հանդիսանում էին յուրատեսակ հուշարձաններ, որոնց տակ երբեմն թաղվում էր ցեղապետը: Այդ հսկա քարե հուշարձանները իրենց չափով ու ձևով պետք է ազդեին ցեղակիցների և ուրիշ ցեղերի մարդկանց վրա՝ ներշնչելով սարսափ ու հնազանդություն այն ցեղի մարդկանց հանդեպ, որոնք կանգնեցրել էին այդ խորհրդավոր կոթողները:

Մարդը սկսեց հասկանալ, որ քարերի որոշակի դասավորությամբ կարելի է ստեղծել կառուցվածքներ, զարդարել դրանք աստվածների ու կուռքերի քանդակներով ու զոհասեղաններով, որոնց շուրջը հնարավոր է խմբավորել բազմաթիվ մանր, ցաքուցրիվ համայնքները և ստեղծել մեծ, համախմբված, ուժեղ ցեղեր:

Դա շինարարական արվեստի՝ ճարտարապետության, առաջին քայլերն էին:

Մարդը խոսեցրեց անշունչ քարերը:

Հյուսիսային Աֆրիկայում, Նեղոս գետի ափերի բերրի հողերում վաղուց ապրում էին ցեղեր, որոնք խնամքով մշակում էին այդ հողերը, հավաքելով տարեկան մի քանի բերք: Բայց դրա համար հարկավոր էր անընդհատ կառուցել ու նորոգել երկրով մեկ տարածված ոռոգման ցանցը:

Սակայն մանր ցեղերն ի վիճակի չէին իրականացնելու նման մեծածավալ աշխատանք: Այդ ցեղերը շուրջ 6000 տարի սրանից առաջ միավորվելով ստեղծեցին մի հզոր ստրկատիրական պետություն: Ցեղերի այդ միավորումն անհրաժեշտ էր նաև պաշտպանելու համար այդ բերրի հողերը քոչվոր ցեղերի ավերիչ հարձակումներից:

Երկիրը կառավարում էր թագավորը՝ փարավոնը, որը համարվում էր արևի՝ եգիպտական գլխավոր աստծու՝ Համմոնի, որդին: Երկրում ամեն ինչ են-



Եգիպտական սյունաշարի մի նմուշ

թարկվում էր նրան: Իր հանդեպ ժողովրդի հավատն ու հնազանդությունը անսասան պահելու համար փարավոնը կառուցում էր իր դամբարանաբուրգը, որը պետք է պատկերեր փարավոնի հավերժության գաղափարը:

Կահիրե քաղաքից ոչ հեռու, Գիզե գյուղի մոտ գտնվում է եգիպտական բուրգերի ամենամեծ խումբը, որը կառուցվել է հինգ հազար տարի առաջ: Դեպի



Եգիպտական տաճարի ճակատը

բուրգերը տանող ճանապարհի կողքին նստած է մի հսկայական քարե առյուծ մարդկային գլխով: Նրա հանգիստ ու խորհրդավոր հայացքը նայում է հեռուն: Կարծես նա գիտի հավերժության գաղտնիքը: Դա աշխարհահռչակ սֆինքսն է, երկրագնդի ամենախոշոր քանդակներից մեկը: Նա կարծես հսկում է ամբողջ շրջակայքը և պահպանում բուրգերում զմռսված փարավոնների հավերժական քունը:

Այս բուրգերից ամենամեծը Քեոփս փարավոնի բուրգն է, որի կառուցման վրա երեսուն տարի շարունակ օր ու գիշեր աշխատել են տասնյակ հազար ստրուկներ: Քեոփսի բուրգը համարվում է աշխարհի ամենամեծ քարե կառուցվածքը: Նրա բարձրությունն է 147 մետր: Բուրգը շարված է 2.300.000 միատեսակ հղկված քարերից, որոնցից յուրաքանչյուրի քաշը երկու և կես տոննա է, իսկ որոշ քարերի քաշը հասնում է 30 տոննայի: Բուրգ-դամբարանի կառուցումը փարավոնի ամենագլխավոր հոգսերից մեկն էր, քանի որ բուրգը կառուցելու համար, բացի ահեղ իշխանությունից ու բազմահազար ստրուկների աշխատանքից, անհրաժեշտ էր նաև ժամանակ: Փարավոնի մահվան օրը քուրմերը նրան տանելու էին արդեն ավարտված հավերժական տունը՝ դամբարանը: Հարկավոր էր շտապել, ժամանակը սուղ էր, իսկ աշխատանքը ահռելի...

Եվ ամեն մի նոր փարավոն գահ բարձրանալու առաջին իսկ

օրից սկսում էր իր սեփական դամբարանի՝ բուրգի կառուցումը: Տասնյակ հազարավոր ստրուկներ և գերիներ, դեռ չավարտած նախորդ փարավոնի դամբարանի կառուցումը, արդեն սկսում էին նոր դամբարանի կառուցումը: Եվ այսպես անցնում էին դարեր...

Իսկ հասարակ ժողովուրդը՝ եգիպտացի գյուղացին ու արհեստավորը ապրում էին եղեգնից ու արմավենու տերևներից պատրաստված ու կավով ծեփված տնակներում:

Տները կառուցվում էին նաև կավե աղյուսներից: Սրանք ավելի կայուն էին և դիմացկուն: Ամեն տուն ուներ իր փոքրիկ բակը: Դեպի բակն էին դուրս գալիս տան բոլոր սենյակները, որոնց առջև աֆրիկյան կիզիչ



Տաճարի սյունաշար դահլիճը

արևից պաշտպանվելու համար դրվում էր ծածկված սյունաշարք:

Հարուստների, բարձր դասի և քրմերի տներում, բացի բազմաթիվ սենյակներից, կար նաև առանձին շքեղ զարդարուն դահլիճ հյուրերի և ընդունելությունների համար: Այդ տների բակերը ունենում էին պարտեզներ ու ջրավազաններ: Այստեղ էին գտնվում նաև պահեստները և տնտեսական այլ կառուցվածքները:

Այս տների ճակատները, ընդունելության դահլիճի պատերն ու առաստաղը մշակված էին հարուստ զարդանկարներով, պատկերագրերով և զարդաքանդակներով:

Մինչև հիմա էլ հիացմունք է առաջ բերում Հին Եգիպտոսի



Հսկայական արձանի տեղափոխումը՝ պատկերված հին եգիպտացի նկարչի կողմից

ճարտարապետների և արվեստագետների հարուստ երևակայությունը, բարձր վարպետությունն ու նուրբ ճաշակը, որն իր ամենաբարձր արտահայտությունը գտավ եգիպտական աստվածներին նվիրված տաճարների կառուցվածքներում:

Բուրգերից հետո սրանք եգիպտական ճարտարապետության մեջ ամենախոշոր կառուցվածքներն էին:

Տաճար տանող ճանապարհի երկու կողմերում դրված էին բազմաթիվ միանման սֆինքսների քանդակներ, որոնց խորհրդավոր հայացքի տակ դեպի տաճար էին շարժվում աղոթողները:

Տաճարն ուներ մի մեծ մուտք, որի երկու կողմերում բարձրանում էին դեպի վեր նեղացող երկու աշտարակ: Մուտքի կողքերին դրված էին փարավոնի հսկա արձաններ, աշտարակների պատերը քանդակազարդ էին: Մուտքը տանում էր դեպի տաճարի ներսը, որտեղ գտնվում էր բակը՝ շրջապատված սյունաշարով: Բակում, գլխավոր մուտքի դիմաց, բացվում էր մի նոր մուտք, դեպի կիսախավար սյունազարդ դահլիճը, որտեղից հաջորդ մուտքը տանում էր դեպի սրբարան, ուր կարող էին մտնել միայն քրմերը: Սրբարանը զուրկ էր բնական լույսից:

Եգիպտական տաճարներում ճարտարապետությունը միաձուլված էր քանդակագործության և գեղանկարչության հետ: Տաճարների մուտքերի մոտ դրված փարավոնների պատկերագրերը, փարավոնին ու նրա հաղթական արշավներին նվիրված զարդաքանդակները պատկերում էին Հին Եգիպտոսի կյանքն ու պատմությունը: Ահա փարավոնը որսի ժամանակ կամ գերիներին մտրակելիս, իր ընտանիքի շրջանում կամ հանգիստ բազմած գահին: Տեսնում ենք նաև բուտրուկներին կառույցների վրա, հողագործին՝ դաշտը վարելիս, նավաստիներին, որոնք բարձ-



Այսպես է պատկերել հին եգիպտացի նկարիչը բնակելի տունը, այգին և ամբարը

բացնում են առագաստը, և շատ ուրիշ տեսարաններ:

Բարձր աստիճանի հասավ ճարտարապետությունը Հին Արևելքի նաև մյուս երկրներում Ասորեստանում և Բաբելոնում Ուրարտուի թագավորությունում Հնդկաստանում, Չինաստանում, որոնք, ինչպես և Նեղոսի հովտում ծաղկած Հին Եգիպտոսի պետությունը, հանդիսացան քաղաքակրթության հնագույն օրրանները համաշխարհային պատմության մեջ:

Հայկական լեռնաշխարհում դեռ հնագույն ժամանակներից մենք հանդիպում ենք կառուցողական արվեստի հուշարձանների բազմաթիվ նմուշների: Դրանք ժայռափոր բնակարաններ են, պաշտպանական նպատակներով սարերի կատարներին կառուցված բերդշեններ, ահռելի մեծություն ունեցող քարերից շինված կառույցներ և այլն:

Երկուսուկես հազարամյակ առաջ, Երևանից ոչ հեռու գտնվող Կարմիր բլուրի վրա ուրարտացիները կառուցեցին մի խոշոր ամրոց՝ հզոր բերդապարիսպներով:

Երևանի հարավ-արևելյան մասում գտնվել է մեկ ուրիշ, ուրարտական ամրոց, որը կոչվել է Էրեբունի (Արին բերդ):

Ուրարտացիները, որոնք բնակվում էին Հայկական լեռնաշխարհում, ունեին շինարարական բարձր արվեստ: Հայ ժողովուրդը դարձավ այդ արվեստի անմիջական ժառանգորդը, և շարունակեց նրա զարգացումը՝ ստեղծելով նոր հայկական ճարտարապետություն:

Ճարտարապետության զարգացման հաջորդ նշանակալից էջը բացվեց Հին Հունաստանում և Հռոմում: Դրա մասին մենք կպատմենք ձեզ մի ուրիշ անգամ:



Նեֆերտիտի թագուհու արձանը

## ՆՇԱՆԱՎՈՐ ՄԱՐԴԿԱՆՑ ԿՅԱՆՔԻՑ

*Տաղանդավոր կինոռեժիսյոր վաղամեռիկ Հենրիկ Հովհաննիսյանը բացառիկ սրամիտ, նաև կատակասեր անձնավորություն է եղել: 1941 թվականին, երբ Սունդուկյանի անվան թատրոնի գեղարվեստական ղեկավարությունը ստանձնեց Վաղարշ Վաղարշյանը, որոշեց ամրապնդել աշխատանքային կարգապահությունը: Հենց առաջին օրը զեկուցում են նրան.*

*— Հենրիկ Հովհաննիսյանը աշխատանքից ուշացել է, ինչպես միշտ:*

*— Կանչեցեք այստեղ:*

*Ներկայանում է Հենրիկը՝ կկոցած պսպղուն աչքերով: Բավականաչափ կշտամբելուց հետո, Վաղարշյանը հարցնում է.*

*— Որքա՞ն աշխատավարձ ես ստանում:*

*— 600,—հանգիստ պատասխանում է Հենրիկը:*

*Վաղարշյանը սեղմում է զանգի կոճակը: Մտնում է քարտուղարուհին:*

*— Ձևակերպել հրաման. Հենրիկ Հովհաննիսյանին այսօրվանից նշանակել 500 ռուբլի աշխատավարձ:*

*Հրամանը փակցնում են պատին: Աշխատանքը վերջացնելուց հետո Վաղարշյանն ուզում է տուն գնալ: Ներքևում, հայտարարությունների տախտակի առջև, նա նկատում է, որ մի խումբ երիտասարդ դերասաններ շնորհավորում և սեղմում են Հովհաննիսյանի ձեռքը: Հետաքրքրվում է: Պարզվում է, որ Հենրիկի աշխատավարձը եղել է 400 ռուբլի, այսուհետև հրամանի համաձայն ստանալու է 500 ռուբլի: Այս սրամտությունը այնքան է դուր գալիս Վաղարշյանին, որ ինքն էլ ծիծաղում և շնորհավորում է Հովհաննիսյանին:*

*Ներկայացումներից մեկի ժամանակ, երիտասարդ, սահմանափակ կարողությունների տեր մի արտիստ, մոտենալով հայ մեծ դերասան Հովհաննես Աբելյանին և ցույց տալով սև տրիկոյի մեջ պարուրված իր ողորկ ոտքերը, ասում է.*

*— Վարպետ, տեսե՞ք է՞, ի՞նչ Համլետի ոտքեր են:*

*Երկար չի մտածում Աբելյանը.*

*— Համլետի համար գլուխ է հարկավոր, գլուխ և ոչ թե ոտքեր:*

ԳԵՎՈՐԳ ԱԲԱՋՅԱՆ



# Զորա գոմեշը

Բ. ԹՈՎԻԿ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Ես այժմ էլ տեսնում եմ նրա վիթխարի հասակը, նրա վեհ, հպարտ գլուխը, ճերմակ ճակատն ու կեռ կոտոշները։

Եթե կազմակերպվեր աշխարհի լավագույն, անթերի կազմվածք ունեցող գոմեշների մի ցուցահանդես, ապա առաջին մրցանակն անշուշտ կստանար Զորա գոմեշը։

Քավոր Սիմոնին էր պատկանում այդ գոմեշը՝ գյուղի հիացմունքի ու խոսակցության առարկան։ Քավոր Սիմոնը երեխա չուներ, նրա, ինչպես և իր կնոջ՝ Փիրոզի, գուրգուրանքի և փայփայանքի առարկան իրենց գոմեշն էր։

Կտավհատի բուսը և չիմանը, հյութալի առվույտն ու կորնգանը այնքան էին գիրացրել Զորա գոմեշին, որ սա լղլղում էր մսի ու ճարպի մեջ, ռունգերից կրակ ու բոց ժայթքելով։ Ամուսինները յուրաքանչյուր օր «թիմարում» էին իրենց գոմեշին ու երբ հսկա կոճղը վզից կախ արած՝ գյուղամիջով հանդն էին տանում արածացնելու, մեծ ու փոքր, կին ու երեխա հավաքվում էին թամաշի։

Զորա գոմեշին զսպում էր միայն իմ քավոր Սիմոնը։ Նրան իր մուլուցքի մեջ հիպնոսող հայացքով կանգնեցնել կարող էր նաև քավորի կին Փիրոզը։

Եվ ուրիշ ոչ ոք։

Գարնանը, երբ առաջին անգամ Զորան դուրս էր բերվում գոմից, ամբողջ գյուղը հավաքվում էր դիտելու վիթխարահասկ գոմեշին։ Չնայած նրա վզից կախված էր լինում գերանաչափ մի կոճղ, այնուամենայնիվ նա առաջ էր վազում, կանգնում, դունչը վերև բարձրացնում, օդը հոտոտում, ապա կճղակներով դոփում գետինը և կոտոշներով հերկում առաջն եղած հողի թմբիկները։

Այդ ամբողջ գործողությունը տևում էր երկուերեք րոպեից ոչ ավելի։

Երբ նա հաղթական գլուխը վերև էր բարձրացնում ու իր գոմշային ձայնով թնդացնում օդը, ուղիղ նշանառությամբ երկու ծու էին թռչում օդում ու փշրվում նրա սևով երիզված ճերմակ ճակատի վրա։

— Շնորհավոր լինի իր տիրոջ համար, չար-աչք՝ չար-փուշ,— լսվում էր հարվածողի ձայնը։

Գոմեշը դուրս էր հանում լեզուն, լիզում ճակատից ռունգերի վրա իջնող ծվերի պարունակությունը, շարունակելով ագահորեն ծծել Բարեզար սարի հյուսիսային թևից իջնող գարնանային հովը։

Ես մի քանի անգամ տեսել էի այդ ծիսակատարությունը և երանի տվել գյուղի «կռվան» Զորա գոմեշի տիրոջը՝ իմ քավոր Սիմոնին։

Կեսօրը թեքվել էր արդեն, երբ գյուղի պարծանքը կազմող երկու «կռվան» գոմեշները՝ Զորան ու Ասլանն իրար հանդիպեցին։

Տերտերոջ Ախանեսն ու քավոր Սիմոնը, չգիտեմ ինչու, չէին ամորձատում իրենց կռվաններին։ Գուցե այն պատճառով, որ Հայոց Ձորի մեր շրջանում հարուստների համար պարզապես անհրաժեշտություն էր համարվում «կռվան» գոմեշներ ունենալ, գուցե և այն պատճառով, որ նրանցից ամեն մեկն ուզում էր գոմեշների մի պատահական հանդիպման միջոցով վաստակել գյուղի առաջին «կռվանին» ունենալու պատիվը։ Ինչ էլ լիներ, այնուամենայնիվ այդ երկու գոմեշները, որոնք ապրում էին առանձին-առանձին, երբեմն ուշ երեկոյան հանդից վերադառնալիս լսում էին միմյանց

ծայները, անշուշտ ամեն մեկն զգում էր, որ իրենից բացի, Հովասանի գյուղում կա և մեկ ուրիշը, գուցե առավել զորեղն ու կատաղին։

Եվ Զորան ու Ասլանը բնազդաբար ձգտում էին դեպի իրար։

Ու հանդիպեցին նրանք այնպիսի թափով ու կատաղությամբ, որի մասին, դրանից հետո, դեռ մի քանի տարի խոսում էին գյուղի ալեոր կանայք ու տղամարդիկ։

Երկու կովանները այնպիսի ահեղ թափով էին իրար հարվածում, որ նրանց մոտենալու մասին մտածել անգամ չէր կարելի։ Երեք հնձվոր՝ մանգաղները ձեռներին բռնած՝ մոտ-մոտ էին անում, որպեսզի կարեն գոնե գոմեշների պարանոցներին ամրացված թոկերը, ազատելու նրանց իրենց տերերի արանքներում եղած հսկա կոճղերից, սակայն սիրտ չէին անում վճռական քայլերի դիմել։ Կոճղերը խելահեղ թափով գոմեշների ոտքերին էին կպչում և արյունոտվում։ Տերտերց Ախանեսի տղան՝ Հովակիմը, պոկում էր իր մազերը և «վա՜յ-վա՜յ» կանչում։

Հեռվից, այլայլված դեմքով ու խռիվ ալված մազերով, երևաց Փիրոզը, որի համար պակաս հրաշք չէր թվում գոմեշների մարտը։ Նա իրենց արտի մոտ արածացրել էր գոմեշն ու ընկել թել մանելու հետ... սատանի բան, քունը տարել էր մի րոպե և ահա նա կանգնած էր արդեն կատարված փաստի առաջ։

Զորա գոմեշն ու Ասլանը գզում էին իրար, կատաղած առյուծների ու բազմերախ վիշապների նման։

Քիչ հետո համարյա ամբողջ գյուղը խռնվել էր դեպքի վայրում։

— Տո՛, ընձի անտանակ մորթեցիք ախր, խայիր... կոճերն արցրկեք է՛, — կանչում էր քավոր Սիմոնը։

— Կոճե՛ր, կոճե՛ր... Սարգո՛, Մարտո՛, Մուրա՛դ, Ավգո, կոճեր կտրեք, կոճե՛ր (կոճղ)... — հազիվ փորը ճռճռելով հրահանգում էր ռես Հեվանեսը։

— Դե թող իմ գոմշուն մեկ վնաս հասնի, նոր էն ժամանակ կտեսնեք, թե վիր մեր լաճ կպիրի, — ափրթնած դեմքով ասում էր Տերտերց Ախանեսը։

Մի տասնյակի չափ տղամարդիկ, որոնք հույսները կտրել էին, թե ծեծելով կկարողանան բաժանել գոմեշներին, այժմ ճգնում էին գոնե նրանց վզերից հանել կոճղերը։

Վերջապես երկու կոճղերն էլ գետին ընկան ու գոմեշները չտեսնված թափով հարվածել սկսեցին միմյանց։

Կանայք հեռու կանգնած վախ ու վիշ էին անում, ոմանք կրծքերն էին ծեծում, երեխաներից ոմանք ոտքի տակ չընկնելու համար բարձրացել էին մոտիկ ծառերի վրա և զսպված ուրախությամբ ցույց էին տալիս միմյանց՝ կոտոշներով հերկված չիմանք կամ բաջալերանքի խոսք ուղղում գոմեշներից մեկին ու մյուսին։

Մամասի տղաները՝ Եղոն ու Սարգոն, չվանները հասցրին։ Կարոյի Արշակը պարանի օղակն իր զորեղ բազուկներով դեպի Ասլանի կոտոշները շպրտեց։ Գոմեշի կոտոշները օղակի մեջ մտան, որից հետո պարանի երկու ծայրերից բռնելով՝ մեր հերոսները, որքան ուժ ունեին, սկսեցին ձիգ տալ։ Այդպես վարվեցին և մի քանի ուրիշները Զորա գոմեշի հետ։

—Դե հա՛, դե հա՛, մեռնեմ տղեներաց, քաշե՛ք, —ձայնեց ռես Հեվանեսը։

—Մեկ քանի հոգի թող գոմեշներաց պոչերից պռնեն, քաշեն, —արձագանքեց գզիրը, որն աշխատում էր հնար եղածին չափ հեռու մնալ ընդհանուր աշխատանքին մասնակցելուց։



—Խաճելու ժամանակ չի, բյաջալ Մարկոս, թե տղամարդ ես, տու էլ ուժ տուր, —սրան կշտամբեց Ալոյի Մինասը։

Թեև երկու կողմից այժմ արդեն երկու տասնյակի չափ մարդիկ էին չարչարվում, բայց բան դուրս չեկավ։ Գոմեշներն ահեղ թափով իրար տանում էին, բերում, ստիպելով մարդկանց իրենց հետ կամ առաջ շարժվել, կամ ետ ընկրկել։

Եղավ մի վայրկյան, որ գոմեշները հեռացան միմյանցից և մարդիկ ազատ շունչ քաշեցին: Բայց դա կատարվեց մի վայրկյան միայն: Երկրորդ ակնթարթին ահեղ չխկոցով նորից իրար զարկվեցին գոմեշների հաստաբուն կոտոշները և նորից սկսվեց խելահեղ մարտը:

Արյունոտվել էին գոմեշների գլուխները, ուսերը, ծնկները... Թվում էր, որ վերջ չկա կռվին, որ կավարտվի այն ժամանակ միայն, երբ գետին կտապալվի գոմեշներից մեկը կամ մյուսը:

Թե ինչպես պատահեց, որ կռվող գոմեշներից քիչ հեռու սկսվեց մի նոր մարտ, այդ չըմբռնեցի ես, միայն այն տեսա, որ գոմեշների տերերն այժմ թողած իրենց գոմեշներին, միմյանց վրա են հարձակվել և առանց խնայելու, փայտի ու քարի հարվածներ են տեղում միմյանց գլխներին: Ընդհանուր շփոթի, աղմուկի, գոռոցների ու ճիչերի մեջ պարզ չէր, թե ով ում էր հարվածում: Պարզ էր միայն այն, որ երկու գոմշատերերի ազգականները, բարեկամներն ու խնամիներն են ճգնում միմյանց հետ արյունոտ դատաստան տեսնել... Ալանի ու Զորագոմեշի համար, որոնք նոր ճակատամարտից անիրազեկ, դեռ շարունակում էին գազանային մոլուցքով բզկտել իրար:

— Տո հրնդըստանցի՛ք, քուլոզ չկա՞ ձեր գլուխ... էսա ի՞նչի կանեք տուք, — ասում էր ռես Հեվանեսը կարկամած, սակայն անզոր միջամտելու ընդհանուր տուրուդմփոցին:

Գագոյի Գևոյի գերանաչափ փայտի հարվածից երկու գլուխ էր ճեղքվել արդեն, իսկ հորեղբայր Բաղդոյի Արշակն իր հաղթ բռունցքներով գետին էր տապալել երեքին ու խեղդում էր չորրորդ ախոյանին:

Ինչո՞ւ համար ախր...

Նրանք ոչ գոմեշ ունեին, ոչ կարող էին գոմեշի տեր դառնալ, սակայն հետո մայրս ինձ ասաց, որ դա անհրաժեշտ էր, որպեսզի գոմշատերերը երբեմըն արորով կամ կենդանի ուժով ու սերմացուով օգնեին նրանց:

Կռվում վիրավորվել էին հինգ մարդ, որոնցից երկուսը՝ ծանր: Նրանց տուն տարան: Իսկ գոմեշների դրությու՞նը: Սրանք դեռ փնչում էին, հեվում, շարունակում կճղակներով ու ծնկներով ակոսել հողը:

Հանկարծ լսվեց մի սրտաճմլիկ գոռոց: Ալանն էր: Նա գլուխը շրջեց և սկսեց փախչել: Զորա գոմեշը հասավ նրան և սրածայր կոտոշներով ճեղքեց ազդրը, քիչ էլ և ահա նա թշնամու փորը կխրեր իր սրածայր կոտոշները, սակայն երկար մահակներով ու փայտերով մարդիկ մեջ ընկան և հարայով ու գոռգոռոցով կանգնեցրին Զորային:

Զորա գոմեշը լիքը կրծքով օդ շնչեց և... եթե քավոր Սիմոնը չհասներ, նա այժմ կոտոշներով կթափեր իր դեմ ելած հանդուգն մարդու փորը: Դեպքը կանխվեց, և գոմեշի արյունոտ վզից վերջապես կախվեց նրան մշտապես ուղեկցող ծանր կոճղը:

Ուշ երեկո էր արդեն, գյուղացիք տները քաշվեցին:

Ես, Ճուլթոն, Ամբրոյի Մարտոյի Կարոն ու Ալոյի Մինասի Սերոբը գաղտագողի հետևում էինք Զորա գոմեշին, որին քավոր Սիմոնը տարավ լողացնելու և արյունից մաքրելու:

Հաղթական էր, առյուծ, մեր Զորա գոմեշը: Այդպիսին էլ նա մնաց:

Քավոր Սիմոնը գոհ էր մենամարտի արդյունքից: Նա շոյում էր գոմեշի ամուր վիզը և ասում ինքն իրեն.

— Մեռնեմ Զորա գոմեշին... վաղը նրա անունը ձեն պիտի տա մեջ Խավլիծորա շրջանին:



ԱՐՇԱՎԻՐ ԴԱՐԲՆԻ

## ՀԱՏԻԿԸ

Թոռը կանչեց.
— Տատի՛կ, տատի՛կ,
Տես՝ գտել եմ
Մի լավ հատիկ։—
Տատիկն ասաց.
— Իմ ոսկեմազ, ոսկեթաթիկ,
Թե որ ցանես,
Նա բերք կտա տասնապատիկ...
— Ցանե՛մ, ցանե՛մ,
Իմ լավ տատիկ։
Մեկը դառնա
Հազար հատիկ...



## ԶԵՓՅՈՒՌԸ

Զեփյուռն անցավ
Խոտից-խոտ,
Գնաց հասավ
Ծաղկի մոտ,
Թերթիկները
Գուրգուրեց,
Մեկիկ-մեկիկ
Համբուրեց,
Ծաղկի անուշ
Բույրն առավ,
Թևին տալով՝
Թը՜ռ՝ տարավ։
Գնաց հասավ
Մանուկին,
Ոսկեգանգուր
Նունիկին,
Նրա շուրջը
Պար պարեց,
Վարսերի հետ
Խաղ արեց,
Քթի մոտով
Թը՜ռ՝ անցավ։
Փոքրիկ Նունեն
Հիացավ.
— Ինչ լավ բան է
Զեփյուռը.
Հեռվից եկավ
Մեր դուռը...
Վա՜յ, ո՞ւր փախավ
Զեփյուռը,
Գնաց հասավ
Ո՞ւմ դուռը։
Ո՞ւմ նվիրեց
Իր բույրը,
Ծաղիկների
Համբույրը։
Զեփյուռ, զեփյուռ,
Ետ արի,
Մի անգամ էլ
Պար պարիր,
Տիկնիկիս էլ գուրգուրիր,
Նրա թուշն էլ համբուրիր։
Զեփյուռ, զեփյուռ,
Արի մոտ,
Որ չմնանք
Քեզ կարոտ։

## ԱՔԼՈՐԻ ԵՐԳԸ

Աքլորն ասաց
Լուսաբացին.
— Հե՜յ, փայտահատ,
Դե առ կացին,
Առավոտ շուտ գնա անտառ,
Տան կրակը միշտ պահիր վառ։
Է-հե՜յ, հնձվոր,
Շուտ արթնացիր,
Մանգաղդ առ,
Արտը հնձիր։
Է-հե՜յ, կալվոր,
Կալդ կալսիր,
Լիքը պարկեր
Շարք-շարք դարսիր։
Տատիկ, կուտ տուր
Աքաղաղին,
Հետո գնա
Ալյուր մաղիր.



Բլիթ թխիր՝ անուշ համով,
Տաք-տաք ուտի փոքրիկ Համոն
Հե՜յ, մանուկներ
Վերի թաղի,
Հերիք քնեք,
Ելեք խաղի։
Ով արթնանա առավոտ շուտ՝
Նա էլ կուտի բլիթ ու կուտ...

Նկ. ԿԱՐԼԵՆ ՀԱՅԱԴՈՐԾՅԱՆԻ



Բաժինը վարում է պրոֆ. ԳԻՏՈՒՆՅԱՆԸ

## ԸՆԿՈՒԶԵՆԻ

Ընկուզենին վաղուց ի վեր տարածված է Հայաստանում: Այդ արժեքավոր ծառը հաջողությամբ աճում է մեր հանրապետության գրեթե բոլոր շրջաններում: Տեղ-տեղ ընկուզենին հասնում է հսկայական չափերի՝ մինչև 35 մետր բարձրության: Ընկուզենին բավականին դիմացկուն է և կարող է ապրել շատ երկար՝ 200—300 տարի: Հայաստանի հյուսիսային շրջաններում ընկույզի պտղաբերությունն սկսվում է տնկելուց 3- 4 տարի հետո: Հասունացած մեկ ծառը տալիս է 70-ից մինչև 300 կգ. պտուղ: Ընկուզենու պտուղները շատ սննդարար են՝ պարունակում են ճարպեր, սպիտակուցային նյութեր, վիտամիններ և օգտակար աղեր: Պտղի միջուկը օգտագործվում է ինչպես թարմ, այնպես էլ վերամշակված վիճակում, հրուշակեղենի արտադրության մեջ ու որոշ ճաշեր պատրաստելիս: Խակ պտուղներից մուրաբա են պատրաստում: Բուսական յուղերի մեջ ընկույզինը առաջնակարգ տեղ է գրավում: Արժեքավոր է նաև ընկուզենու բնափայտը, որից պատրաստում են կահույք: Պտուղների կանաչ կեղևներից, տերևներից և ծառի կեղևից ստացվում է սև ու մուգ շագանակագույն ներկ, որով ներկում են բրդյա ու մետաքսյա թելեր և գործվածքներ:

Ընկուզենին հեշտությամբ բազմանում է սերմերով: Նա ունի հողի խորը շերտերը թափանցող իլիկաձև արմատներ: Դրա համար էլ կարող է աճել նաև առանց արհեստական ոռոգման: Սակայն փորձը ցույց է տալիս, որ ճամփեզրերին գտնվող ծառերը անհրաժեշտ է ջրել: Իսկ եթե ջրելու հնարավորություն չկա, ապա հաճախակի պետք է փխրեցնել հողը և այն ծածկել խոտով կամ ծղոտով:

Մինչև վերջերս ճանապարհների եզրերին տընկում էին անտառներից վերցրած տնկիներ: Սակայն դրանք սովոր լինելով ստվերի և խոնավ պայմանների, բաց տարածություններում լավ չէին աճում և շուտով չորանում էին: Խճուղային ճանապարհները նպատակահարմար է զարդարել տնկարաններից վերցրած ընկուզենու տնկիներով: Ընկուզենու ծառուղիները ոչ միայն կգեղեցկացնեն մեր ճանապարհները, քամիներից ու շոգից կպաշտպանեն մոտակա ցանքսերն ու այգիները, այլև կտան մեծ եկամուտ:

Հայաստանում այդպիսի խրախուսելի նախաձեռնությամբ առաջինը հանդես եկան Իջևանի դպրոցականները: Նրանց ստեղծած ծառուղին շրջկենտրոնից ձգվում է մինչև Ուզունթալա-փոստ բնակավայրը: Ընկուզենիների բարձրությունն այժմ հասնում է 8—9 մետրի, իսկ սաղարթի լայնությունը՝ մինչև 6 մետրի: Ծառերի մեծ մասը պտղաբերում է:

Պիոներնե՛ր և դպրոցականնե՛ր, դուրս եկեք արշավի, ընկուզենիներով ծառազարդեք ճանապարհներն ու խճուղիները, ստեղծեք զովասուն ծառուղիներ:

*Լ. ԷՆՖԻԱՋՅԱՆ*

*Ուջիլա. այսպես է կոչվում հնագույն ու ինքնատիպ կիրդի ժողովրդի մայրաքաղաքը: Ոչ մի քաղաքական քարտեզի վրա այն չեք գտնի: Եվ աշխարհի ոչ մի հանրագիտարանում այդ ժողովրդի կենցաղի ու սովորույթների վերաբերյալ ոչինչ չեք կարդա: Աֆրիկայի արևադարձային անանցանելի անտառներով և Մանդարի լեռներով կտրված լինելով ամբողջ աշխարհից, կիրդերը երկար ժամանակ հայտնի չէին եվրոպական աշխարհագետներին: Նույնիսկ Նիգերիայում և Կամերունում, որոնց սահմանակիցն են կիրդերը, շատ բան չգիտեն այդ ժողովրդի մասին: Կիրդերը այդ երկրների տնտեսական կյանքին չեն մասնակցում, ինքնամփոփ բնատնտեսությամբ են ապրում: Միայն դարերի խորքից մեզ հասած աֆրիկյան ինքնատիպ լեգենդներն են, որ թույլ են տալիս վերապատկերել կիրդերի անցյալը:*

*Դարեր շարունակ, այդ ժողովուրդը ապրել է Բենուե գետի արգավանդ դաշտավայրում՝ զբաղվելով միայն երկրագործությամբ և մետաղ հալելով, որի համբավը տարածված էր ամբողջ հասարակածային Աֆրիկայում:*

*18-րդ դարում այդ ցեղի ծաղկմանը վերջ տրվեց. Բենուե դաշտավայրի վրա աչք դրած ֆուլբե ժողովրդի ռազմատենչ և ավելի ուժեղ անասնապահ հեծ-*

յալները, ճնշելով դուրս վանեցին կիրդերին, ավերեցին նրանց գյուղերը: Փախչել կարելի էր միայն մեկ ուղղությամբ. դեպի հասանքով վեր բարձրանալ, այնտեղ, ուր ահավոր անտառը ճանապարհը չէր փակում: Այդ ճանապարհը նրանց դուրս բերեց լեռները, չոր, անբերրի լեռները, որոնք ֆուլբերի հեծյալների համար անմատչելի էին:

Զրկվելով ամեն ինչից, կիրդերը այդտեղ բերեցին երկրագործության և մետաղագործության իրենց դարավոր հմտությունը:

Լեռնալանջերին նրանք արհեստական հողահարթակներ ստեղծեցին, որտեղ սկսեցին կորեկ աճեցնել: Կորեկից անուշահոտ բույսերով համեմված հացը այդ ցեղի հիմնական սնունդն է հանդիսանում: Նրանք միս ուտում են միայն հանդիսավոր օրերին:

Անձրևների ժամանակ, երբ լեռներից հոսող առատ ջրերը խանգարում են գյուղատնտեսական աշխատանքներին, սկսվում է մետաղագործությունը: Մետաղի արտադրության համար հումք է հանդիսանում երկաթի օքսիդով հարուստ ավազը: Այդ մաքրում են խառնուրդներից և փայտածուխի վրա տաքացնում մինչև սպիտակելը: Այնուհետև մետաղը երկար ժամանակ կռում են բազալտե հսկայական զնդանի վրա: Այդքան պրիմիտիվ եղանակով ստացված երկաթից հմուտ դարբինները պատրաստում են հուլունքներ, ապարանջաններ՝ ապշեցնելով իրենց կատարման արվեստի նրբությամբ և վարպետությամբ:



Միայն մետաղյա իրերն են համարյա, որ կիրդերին կապում են արտաքին աշխարհի հետ: Տարեկան երկու անգամ նրանք իջնում են լեռներից, որպեսզի իրենց պատրաստած մետաղյա իրերը փոխանակեն կավե ամանների, կտորեղենի և այլ ապրանքների հետ:

Այդպես էլ ապրում է աշխարհից կտրված, կարծես դարերի խորքից մեզ մոտ եկած այդ ինքնատիպ և խիզախ ժողովուրդը:

## ԾԱՌԻ ՏՈՆ

«Գյուղի արժանիքը, գեղեցկությունը, ազնվությունը, կյանքի խորհրդանիշը՝ ծաղկած ծառն է»,— ասում են հորդանանցիները: Նրանք ամեն տարի նշում են ծառի տոնը, որը վեր է ածվում իսկական ժողովրդական հանդեսի: Այդ օրը քաղաքներում և գյուղերում բոլորը՝ մեծ թե փոքր, վաղ առավոտից շտապում են դեպի այն վայրը, ուր նոր անտառ պիտի տնկվի:

Հորդանանի մայրաքաղաք Ամմանում վերջերս այդպիսի վայր հանդիսացավ Ալ-Կըլյա սարը, որի վրա բարձրանում են հին հռոմեական ամրոցի ավերակները: Տոնահանդեսի պաշտոնական բացումից դեռ շատ առաջ բլուրը և ավերակները գրավել էին Ամմանի երեխաները: Նրանք աղմկում, ուրախանում էին, թափահարում թղթե փոքրիկ դրոշակները: Իսկ բլրի կենտրոնում, պատվավոր հյուրերի համար նախատեսված վրանների մոտ սպասում էին այդ օրվա գլխավոր պատճառները՝ թիթեղյա ամանների մեջ դրված սոճու դալար տնկիները: Այսօր նրանց բախտ է վիճակվել անտառի վերածվել:

Ուղիղ ժամը իննին հինավուրց ամրոցի վրա տարածվում են տոնահանդեսի բացումն ազդարարող հիմնի հնչյունները: Տրադիցիոն կերպով, ոտանավորների ընթերցումից և գյուղատնտեսության մինիստրի ճառից հետո, հյուրերի թափորը շարժվում է դեպի տնկիները:

## ԱՄԵՆԱ-ԱՄԵՆԱ

Ամենահազվագյուտ նամականիշերը համարվում են երկու պենսանոց երկնագույն և մեկ պենսանոց դեղնա-կարմիր նամականիշերը, որոնք թողարկվել են Մավրիկիա կղզում 1847 թվականին: Դրանց թիվը քսանից չի անցնում:

Ամենահնագույն երաժշտական գործիքը համարվում է փողը, որը մարդկությանը հայտնի է արդեն 30 հազար տարի:

Ամենամեծ գեղանկարը՝ «Դրախտը», նկարել է յոթանասունամյա իտալացի գեղանկարիչ Տինտորետոն 1588 թվականին: Կտավի մի կողմը յոթ մետր է, իսկ մյուսը՝ 22: Այն ցուցադրվում է Վենետիկի դոժերի պալատում:

Ամենափոքրիկ մարդուն նկարագրել է ֆրանսիական բնագետ Բյուֆոնը 18-րդ դարում:

Գաճաճի բարձրությունը երեսունյոթ տարեկան հասակում եղել է 43,3 սանտիմետր:

Ամենամեծ ալիքը հաջողվել է չափել Խաղաղ օվկիանոսում 1933 թվականին. բարձրությունը հասել է 33,5 մետրի:



Շապիկի առաջին էջը՝ Նկ. Ալ. Գրիգորյանի

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ










## ԽԱՉԲԱՌ ՀԻՆԳ ՏԱՌՈՎ

1—2. Բույսի կարևորագույն օրգան: 1—7. Համամիութենական պիոներական ճամբար: 2. Հնդիկ գրող: 3—4. Սովետական գրոսմայստեր: 3—12. Հերոս պիոներ: 4. Ադրբեջանական երգիծաբան: 5—6. Լեհ տաղանդավոր կոմպոզիտոր: 5—13. Ծաղիկ: 6. Ավտոնոմ ռեսպուբլիկայի մայրաքաղաք: 7. Հնդիկ նշանավոր կինոդերասան: 8—9. Լատիշ գրող՝ «Դեպի նոր ափ» գրքի հեղինակը: 8—16. Լուսատու: 9. Միրգ: 10—11. Սովետահայ վեպերից: 10—17. Սննդամթերք: 11. Կղզի՝ Տիրենյան ծովում, որտեղ եղել են Վ. Ի. Լենինը և Մ. Գորկին: 12. Մետաղ: 13. Շիրվանզադեի դրամաներից: 14—15. Թռչուն: 14—18. Ռուս նկարիչ, «Աղջիկը դեղձերով» նշանավոր կտավի հեղինակը: 15. Թերակղզի՝ Եվրոպայում: 16. Գետ՝ Աֆրիկայում: 17. Հայ տաղանդավոր վիպասան: 18. Լիճ՝ Հյուսիսային Ամերիկայում:



Կազմեց ԱՇՈՏ ՀԱԼԱՋՅԱՆԸ


Խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Ա. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Գ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41. Հեռախոսներ՝ 2-41-83, 2-39-06:

ՎՖ 06702: Պատվեր՝ 2123: Տպաքանակ՝ 13 350: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 9 X 1965 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91: Գինը՝ 20 կ.




## ԽԱՉԲԱՌ

ՈՒՂՂԱՀԱՅԱՑ—1. Իտալացի կոմպոզիտոր և դիրիժոր: 2. Սովետահայ բանաստեղծ: 3. Քաղաք՝ Բուլղարիայում: 4. «Իշխան Իգոր» օպերայի հեղինակը: 7. Ժամանցային առաջարկ: 9. Կինոռեժիսոր, ՍՍՌՄ ժող. արտիստ: 10. Միջազգային գրոսմայստեր: 12. Էլեկտրական լարվածության միավոր: 13. Ծաղիկ: 18. Երաժշտական ստեղծագործություն: 22. Ռուս գրող: 23. Հայկական հեքիաթի հերոս: 26. «Երջանկություն» բալետի հեղինակը: 27. Կոմիտասի երգերից: 28. Ֆուտբոլային թիմ:

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ—5. Սովետական Միության մարշալ, հերոս: 6. Ռուս ադմիրալ: 8. Դ. Դեմիրճյանի վեպերից: 11. Վրացական կինոնկար: 14. Լիտվական գրող: 15. Պետություն՝ Միջին Ասիայում: 16. Եվրոպական պետության մայրաքաղաք: 17. ՍՍՌՄ ժողովրդական արտիստուհի: 19. Հույն էստրադային երգչուհի: 20. Ամերիկահայ գրող: 21. Պտուղ: 24. Գորկու «Հատակում» պիեսի հերոսներից: 25. Ազգային հաց:

*Կազմեց Ֆ. ՏՈՆՈՅԱՆԸ*

# Պատասխանում ենք

## «ՊԻՈՆԵՐ» № 7

«Բառացանց» — 1. Ինդոս: 2. Օդեսա: 3. Դանուբ: 4. Կազան: 5. Ալժիր: 6. Նեղոս: 7. Էլբրուս: 8. Բաթումի: 9. Մեխիկո: 10. Բայկալ: 11. Տալլին:

«Մկրատի օգնությամբ» —







«Բնական թվերի գումարը» — Փոքրիկ Գաուսը նկատեց, որ բնական թվերի 1—100-ի շարքի առաջին և վերջին (1 և 100-ի), ինչպես նաև երկրորդ և նախավերջին (2 և 99-ի), երրորդ և երրորդի վերջին թվանշանների (3 և 98-ի) և այդպես մինչև 50-ը զույգ վերցրած թվերի գումարը հավասար է 101-ի: Նա նկատեց նաև, որ այդպիսի զույգեր 1—100-ը ընդամենը 50-են: Հետևաբար՝ 101 × 50-ով ստացվում է 5050:

«Կարո՞ղ ես...» — Գևորգը 30 կոպեկ պետք է տար Գուրգենին:

## «ՊԻՈՆԵՐ» № 8

«Խաչբառ վեց տառով» — 1. Կարինե: 2. Իտալիա: 3. Ավրորա: 4. Արագոն: 5. Նանկին: 6. Գրեկով: 7. Իվանով:

«Վիկտորինա» — Կրժիժանովսկի, Արմեն Տիգրանյան, Բլանտեր, Օստրովսկի, Ալ. Սպենդիարյան:

«Աշխարհագրական խաչբառ» — 1. Ալդան: 2. Իլի: 3. Բրյուսել: 4. Սիցիլիա: 5. Արմավիր: 6. Վան: 7. Բիլ: 8. Դանուբ: 9. Վիտիմ: 10. Նեղոս: 11. Վենետիկ: 12. Դոն:

«Խաչբառ չորս տառով» — 1. Օզոն: 2. Նոնա: 3. Անապ: 4. Գաթա: 5. Աթոս: 6. Սոնա: 7. «Անուշ»: 8. Շուրա: 9. Արագ: 10. Զանգ: 11. Գնել: 12. Լենա: 13. Անիվ:

«Հանելուկ» — Տետրակ—տատրակ:

### ՃԻՇՏ ՊԱՏԱՍԽԱՆԵԼ ԵՆ՝

Համլիկ Ավետիսյանը, Գագիկ Ասլանյանը, Անահիտ Ադամյանը, Հունան Գրիգորյանը (Երևան), Շուշաննա Քոչարյանը, Նազիկ Իսոյանը, Օլյա Աղվանյանը (Ալավերդի), Ջուլիետա Ղարյանը և Էդիկ Ոսկանյանը (Սիսիան), Ներսիկ Բեչախչյանը (Արթիկ), Անժելա Կիրակոսյանը (Արտաշատ), Մանյա Գուլանյանը (Սևան), Ալիկ Պետրոսյանը (Սպիտակ) և ուրիշներ:



ԲԱԼ
*ՀԱԿՈԲՅԱՆ ԱՐԱՄ*
*(Ռումինիա, 5 տարեկան)*



ԱՆՁՐԵՎԻՑ ՀԵՏՈ
*ՍԱՖԱՐՅԱՆ ՍԵՎԱԿ*
*(Ադր. ՍՍՌ, Շաշի, Ղարադշլաղ գյուղ, 7-րդ դաս. աշ.)*

Աշխարհում չկա մի հայաբնակ վայր, ուր մուտք չգործի «Պիոները»: Մեր պատանի ընթերցողներից խմբագրությունը հաճախ նամակներ է ստանում: Նամակների հետ միասին նրանք ուղարկում են նաև իրենց ստեղծագործությունները:

Իսկ այս նկարը «Պիոներին» է ուղարկել հեռավոր Ցեյլոնում ապրող 11-ամյա ԳԵԺԱՆ ԴԵ ՖՈՆՍԵԿԱՆ: Նա մեր ամսագիրը տեսել էր փոքրիկ Աննայի մոտ, որը վերջերս Ցեյլոն էր մեկնել իր մայրիկի՝ անվանի ջութակահար Անահիտ Ցիցիկյանի հետ: